## «Մի՛ փախչիք»

Տոքթ. Ատընաուըրի, Արեւմտ. Գերմանիոյ վարչապետը, սրտիպողական կոչ մը ուղղեց Արեւելեան Գերմանիոյ բնակիչներուն, որպէսզի չփախչին: Կոչը կ'ըսէ.

— «Եթէ հարիւր հազարաւոր Գերմաններ փախչին, նոյնքան թիւով Ռուսեր կամ Ասիացիներ պիտի բռնեն անոնց տեղերը: Ամէն Գերման որ կը մնայ՝ կը պաշտպանէ Գերմանիոյ մէկ հողաչերտը: Ամերիկան պիտի շարունակէ օգնել, պայմանաւ որ Եւրոպան պաշտպանէ ինքզինքը: Այլապէս Ամերիկան կամաց կամաց պիտի քաշուի Եւրոպայէն: Պ. Տըլըսի վերջին ճառը կասկած չի ձգեր այդ մասին: Արեւմուտքի համար տարբեր միջոցներ կան պաշտպանուելու, — Էլպայի, Հռենոսի, Պիրէնեաններու վրայ կամ Եւրոպայէն դուրս: Էլպայի՞ թէ Հռենոսի վրայ պիտի պաշտպանուի, — այս խնդիրը կախում ունի մեր ընելիքէն: Որ եւ է վարանում Եւրոպայի մէջ՝ պիտի օգնէ Ամերիկայի երբեմնի մեկուսացման: Ես համոզուած եմ թէ պիտի հարթուին այն բոլոր խոչընդոտները որ կ'ուշացնեն կնքուած դաշնագիրներուն վաւերացումը: Եթէ Ֆրանսա մերժէ առաջ վաւերացնել, դժբախտութիւն մը պիտի ըլլայ մեզի համար»:

Եզրակացնելով, Տոքթ. Ատընաուըր նորէն կը յիշեցնէ թէ հայրենիքին շահը կը պահանջէ որ ամէն գերման իր տեղը մնայ խորհրդային շրջանին մէջ, եթէ անմիջական վտանգ չսպառնար իր կեանքին:

✕ Արեւելեան Գերմանիոյ Հրեաները ժողով գումարելով, հետեւեալ բանաձեւը քուէարկեր են, բոլշեւիկներու ճնշումին տակ, ինչպէս կը հաղորդէն հրէական աղբիւրէ.

Դատապարտել Ամերիկայի «Ջոյնթ» (Միացեալ) կոմիտէն՝ իբրեւ լրտեսներու բոյն. — նոյնպէս խստօրէն Սիոնականութիւնը, իբրեւ ֆաշական ազգ. շարժում եւ Իսրայէլի պետութիւնը՝ իբրեւ գործիք ամերիկացի հրձիգներու: Յետոյ, արդար նկատել Փրակայի մահավճիռները: Եւ վերջապէս, յայտնել թէ հակահրէական շարժում չկայ ոչ արեւելեան Գերմանիոյ, ոչ ալ ամբողջ արեւելեան Եւրոպայի մէջ:

Հեռագիրը կ'ըսէ թէ բազմաթիւ հրեայ երեւելիներ աքսորուած են եւ թէ հետապնդումները կը շարունակուին:

---

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՊԱՏԵՐԱԶՄԸ անխուսափելի համարելով, գերման դնդ. Օթթօ Սքորցենի — ան որ Մուսոլինին փրկեց օդանաւով — կ'ըսէ թէ այս անգամ աւելի ահաւոր դէպքեր պիտի պատահին, «իբրեւ հետեւանք Նիւրընպէրկի դատավճիռներուն»: Գնդապետը Գահիրէ կը գտնուէր երեք շաբաթէ ի վեր:

ՆՈՐ ԺԽՈՐ ՄԸ պայթեցաւ Ազգ. ժողովին մէջ, առողջ. նախարարին՝ Պ. Պուլթեմիի դէմ: Ձախերը միշտ «մարդասպան» կը պոռային: Ատենապետը սրտիպուեցաւ խօսք չտալ երեսփոխանի մը, յիշեցնելով թէ նիւթէն կը շեղի: Կոլեան երեսփոխան մըն ալ ըսաւ թէ պիտի չքուէարկեն առողջ. վարչութեան վարկերը, իբրեւ բողոք: Պ. Պուլթեմի ուզեց խօսիլ, բայց կարելի չէր բառ լսել, խժալուր աղմուկին մէջ: Ձախերը եւ աջերը կը պոռային իրարու դէմ, — «Աւազակ, մարդասպան» եւն.: Բայց եւ այնպէս ելմտացոյցը քուէարկուեցաւ 211ի դէմ 407 ձայնով:

ԱՒՍՏՐԻՈՅ հաշտութեան դաշնագիրը քննելու համար, Դաշնակիցները ժողովի հրաւիրեցին Խ. Միութիւնը Փետրուար 6ին, Լոնտոնի մէջ:

ԹՈՒՐՔԻԱ պիտի երթայ, Բշ. օր, ամերիկացի ծովակալ Քերնի, խորհրդակցելու համար Միջերկրականի պաշտպանութեան մասին:

Խ. ՄԻՈՒԹԻՒՆԸ հիւլէական ռումբ ունի եւ երեք անգամ փորձած է, կը պնդէ Մ. Նահանգներու հիւլէական ուժի յանձնախումբին նախագահը, ի պատասխան Պ. Թրումընի որ առջի օր ըսած էր թէ վստահ չէ որ Ռուսերը գործածելի ռումբ ունին:

---



---


Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)


## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

14 Փետրուար Շաբաթ ժամը 20.30ին, Sociétés Savantesի թատերասրահին մէջ, 8 rue Danton, métro St. Michel եւ Odéon:

Կը նախագահէ ընկեր Ս. ԹՈՐՈՍԵԱՆ

Կը խօսի ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Մանրամասնութիւնները յաջորդով:

## Հանդէս երեկոյթ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Քաշանի մասնաճիւղի:

Շաբաթ, 7 Փետրուար, ժամը 20.30էն մինչեւ կէս գիշեր: Պանեէօյի դպրոցի Préau des Filles գեղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux):

Ճոխ եւ խնամուած յայտագիր:

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Ց. Պարոնեանի «ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն:

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւններ:

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր:

Պիւֆէ մատչելի գիներով: Ծախքերու մասնակցութիւն:

Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 188 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պանեէօ (Ligne de Sceaux):

Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն:

---



ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Այրի Տիկին Ն. Զօրայեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որ անձամբ, նամակով, ծաղկեպսակով եւ նուիրատուութեամբ ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ ՆՇԱՆ ԶՕՐԱՅԵԱՆԻ մահուան առթիւ:

✕ Այս առթիւ այրի տիկին Ն. Զօրայեան 5000 Ֆր. կը նուիրէ Մուրատ Ռափայէլեան Սանուց Միութեան Ուսումնասիրաց ֆոնտին:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ.— Պէլվիլի Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի տարեկան ընկերա-համակրական խնճոյքը՝ Մարտ 1ին:

---

### ՄԱՆԿԱԿԱՆ ԳԻՐՔԵՐ

ԵՐԿՈՏԱՆԻՆ (նախամարդու պատմութիւն): Գարլ Էվալդ: Թարգմ. Ա. Մուրատխանեան: (Պատկերազարդ): Գին 100 լիբ. ղ. «Համազգային»ի, Մանկական Մատենաշար թիւ 12:

ԿՈՒԼԻՎԵՐԻ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆԸ, Ճոնաթան Սուիֆթ: Պատկերազարդ: «Համազգային»ի մանկական եւ պատանեկան մատենաշար թիւ 13: Գին 75 լիբ. ղ.:

ՀԱՍՑԷ.— Association Hamazkain, Rue Hussein Beyhoum No. 10, Beyrouth (Liban):

---

### ԺԱՆԹԻՅԻ ԴՊՐՈՑԻՆ ՎԵՐԱԲԱՑՈՒՄԸ

Փարիզի եկեղեցիին կրթ. մարմինը կը ծանուցանէ թէ վերաբացուած են Ժանթիյիի Եչ. օրուան դպրոցին ցորեկուան եւ գիշերուան հայերէնի դասընթացքները եւ կը սկսին յառաջիկայ հինգշաբթի Փետրուար 5, ժամը 9ին:

Կը խնդրուի ծնողներէն իրենց զաւակները ղրկել 22 rue Victor Hugo, ծանօթ սրահը:

---

ՊՍԱԿԻ ՕՐԵՐԸ.— Փարիզի Հայ. Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը հայ հասարակութեան ուշադրութեան կը յանձնէ հետեւեալ կէտերը, պսակի արարողութեան մասին.— Յունուար 31էն մինչեւ Փետրուար 12 հինգշաբթի արտօնուած: Ամբողջ Մեծ Պահքի օրերը մինչեւ Զատկ. առաջին կիրակին արգիլուած:

Նոր կիրակիի երկուշաբթիէն մինչեւ Վարդավառի բարեկենդան Յունիս 14, թոյլատրուած, բացի 24 Մայիս Հոգեգալստեան կիրակիէն:

# Կարմիր վտանգը Միջին Արեւելքի մէջ

ԵԳԻՊՏՈՍԻ ՆՈՐ ԿԱՐԳՈՒՍԱՐՔԸ

Գ. Կիլպըրթ Էլիոթըր, համաշխարհային կառավարութեան ախոյեանը, ճառ մը խօսելով Անգլիոյ Սրեսփ. ժողովին մէջ, ըսաւ.

— «Միջին Արեւելքը յարաբերութեանց լարման ամէնէն մեծ կեդրոնն է ներկայիս: Եթէ Անգլիա եւ Ամերիկա միացեալ ձեռնարկ մը չկատարեն արագօրէն, այդ ամբողջ շրջանը պիտի գտնէն կարմիր տիրապետութեան տակ: Միացեալ Ազգերը իրենց ներկայ կազմով չեն կրնար լուծել Միջին Արեւելքի խնդիրները: Վերակազմեալ Ազգաժողով մը կրնայ արդարութեամբ լուծել արաբական եւ հրէական խնդիրները եւ իրապէս պահպանել խաղաղութիւնը»:

X Զօր. Նեկիպ Փետր. 10ին հրատարակեց այն օրէնքը որուն համաձայն պիտի կառավարէ երկիրը երեք տարի, մինչեւ նոր Սահմանադրութեան հռչակումը:

Այդ օրէնքին համաձայն, երկրին գերագոյն իշխանութիւնը կը կազմէ Յեղափոխական Խորհուրդը որ միեւնոյն ատեն խորհրդարանի դեր պիտի կատարէ, ներկայ դահլիճին անդամներով: Նախարար մը կարդալով նոր օրէնքը, յայտնեց թէ Յեղ. Խորհուրդը կը բաղկանայ 13 անդամներէ, նախագահութեամբ զօր. Նեկիպի: Անդամներէն ինը միայն ծանօթ են, միւս չորսը գաղտնի կը պահուին: Բոլորն ալ սպաներ են:

Զօր. Նեկիպ ըսաւ թէ առժամեայ օրէնքը կ'ապահովէ քաղաքացիներու իրաւունքները եւ պարտականութիւնները, խօսքի եւ պաշտամունքի ազատութիւնը եւն.: Օրէնքը «մասնաւորապէս պիտի պաշտպանէ յեղափոխութիւնը եւ նոր կարգուսարքը»: Եգիպտոս պաշտօնապէս կը մնայ միապետութիւն:

ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

30 ՀՈԳԻ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՆ Թէլ-Աւիվի մէջ, իբրեւ մեղսակից խորհրդային դեսպանատան դէմ կատարուած եղեռնափորձին: Ռումբի պայթումէն վիրաւորուած է նաեւ դեսպանին կինը: Իսրայէլի վարչապետը խստօրէն պարսաւեց եղեռնափորձը, միեւնոյն ատեն ցաւ յայտնելով խորհրդային դեսպանին: Ոստիկանութիւնը խուզարկեց հակաբոլշեւիկ խմբակցութեան ակումբները Թէլ-Աւիվի, Եաֆայի եւ Երուսաղէմի մէջ:

ԵԳԻՊՏԱԿԱՆ ՕԴԱՆԱՒ մը խորտակուեցաւ Գահիրէի եւ Սուէզի միջեւ, աւազի փոթորիկի բռնուելով: 35 սպաներէն 30ը մեռան:

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպութեամբ Հ. Յ. Դ. Ս. Լուի ենթ.ին եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Շրջ. կոմիտէին, շաբաթ, 14 Փետր. ժամը 20.30ին, Սէն Լու, «Էօվր»ի սրահին մէջ:

Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբը կը ներկայացնէ Շիրվանզադէի ՉԱՐ ՈԳԻՆ, ղեկավարութեամբ Ղ. Փիլիկեանի:

X Նոյն ներկայացումը կը կրկնուի Փետր. 21ին, շաբաթ ժամը 20.30ին, նախաձեռնութեամբ Վալպարէյի «Արամ» խումբին:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Զամուրճեան ընտանիքը եւ պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՎԱՌՎԱՌ ԶԱՄՈՒՐՃԵԱՆԻ

մահուան առթիւ:

X Պ. Սահակ, Խաչիկ, Երանուհի եւ Սիրանոյշ Քիրազեան իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ

ՕՐ. ՆԱԶԻԿ ՔԻՐԱԶԵԱՆԻ

մահուան առթիւ:



## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

14 Փետրուար Շաբաթ ժամը 20.30ին, Sociétés Savantesի թատերասրահին մէջ, 8 rue Danton, métro St. Michel եւ Odéon:

Կը նախագահէ ընկեր Ս. ԹՈՐՈՍԵԱՆ

Կը խօսի ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Անտիս Քիւփէլեան (երգ), Գ. Ամիրաեան (արտասանութիւն), Քէսէլլի եւ Բենօ (նուագ):

Շավիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Շանթ» թատերախումբը կը ներկայացնէ Լ. Շանթի «ՃԱՄԲՈՒ ՎՐԱՅ» ողբերգութիւնը:

Ծախքերու մասնակցութեան համար մուտք 100 ֆրանք:



ԼԻՈՆԻ ԱԶԳ. ՄԻՈՒԹԵՆԷՆ

ԼԻՈՆ.— Տ. Վռամշապուհ քահանայ հիւանդ ըլլալով ստիպուած է երեք ամիս եկեղեցիէն բացակայիլ: Կը խնդրուի շրջանի կրօն. ընկերակցութիւններէն Ս. պսակի կամ մկրտութեան համար Ազգ. Միութեան լուր տալ տասը օր, իսկ թաղումի համար երեք օր առաջ, որպէսզի բոլորին գոհացում տրուի: (Մէկ քահանար միայն ունինք):

X Գաղթ. դրասենեակը վերաբացուած ըլլալով՝ Ազգ. Միութիւնը հրահանգ ստացած է հայ գաղթականներու ծննդեան, ամուսնութեան եւ այլ վկայագիրներու համար օգնել կեդր. դրասենեակին: Լիոնի եւ շրջանի Հայերը կրնան դիմել 69 Rue Louis Blanc, Հայոց եկեղեցին ամէն օր ժամը 4էն 7 կէս օրէ վերջ:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

ՈՒՐԲԱԹ ժամը 21ին, Ակնունի ենթակոմիտէ:

ՇԱԲԱԹ ժամը 21ին Զաւարեան ենթակոմիտէ:

Կիրակի, ժամը 16ին, Արամ խումբը

Կիրակի ժամը 16ին ընկեր Կարօ ենթ.:

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 3ին Café Régent. Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Արեւմտ. Եւրոպայի Ուսանողական միութեան ժողովը այս ուրբաթ ժամը 8 ու կէսին, սովորական հաւաքատեղին:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ, 13 Փետրուար ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին: Դասախօս՝ Պատ. ՍԻՍԼԵԱՆ: Նիւթ՝ «Դասակարգերու պայքարը եւ քրիստոնէութիւնը»:



### Սեւրի Մուրատեան Վարժարանի

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

փետրուար 15ի եւ 22ի կիրակիներ ժամը 15ին:

Պիւֆէ մատչելի գիներով:

### Տարեկան մեծ պարահանդէս

Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

Կիրակի 15 Փետր. ժամը 16էն մինչեւ կէս գիշեր: Cercle Militaireի սրահներուն մէջ:

Մեթրօ Saint Augustin:

Նուագ, ճոխ պիւֆէ, անակնկալներ եւն.:



Դաշնակահարուհի ՕՐ. Վ. ՃԻՆՃԵԱՆԻ նուագահանդէսը Մարտ 17ին Salle Gaveau

Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

## Մոսկուա եւ Իսրայէլ խզուեցան

Խ. Միութիւնը երէկ խզեց իր դիւանագիտական յարաբերութիւնները Իսրայէլի հետ, ճամբու դնելով անոր դեսպանութիւնը:

Այս խզումը հետեւանք է Թէլ-Ավիվի խորհ. դեսպանատան դէմ կատարուած եղեռնափորձին: Ինչպէս կը յիշուի, ռումբ մը պայթելով դեսպանատան մէջ, խորտակեց շէնքին մեծ մասը: Վիրաւորուեցան երեք պաշտօնեաներ եւ դեսպանին կինը:

Իսրայէլ անմիջապէս ցաւ յայտնեց, միեւնոյն ատեն բազմաթիւ ձերբակալութիւններ կատարելով. բայց կը թուի թէ Մոսկուան գոհ չէ մնացած:

Դշ. օր ցոյց մը կատարուեցաւ Թէլ-Ավիվ-Եաֆայի մէջ: Մօտ 400 կարմիր ուղեկիցներ թափօր մը կազմեցին գլխաւոր պողոտային վրայ, բողոքելու համար կատարուած յարձակման դէմ: Այս առթիւ բուռն ճառեր խօսուեցան դաշնակիցներուն դէմ: Հետեւանքը եղաւ ընդհարում հակառակորդներուն հետ: Քարեր նետուեցան եւ առնուազն քսան հոգի վիրաւորուեցան: Ցուցարարները խորհրդային դեսպանատուն երթալով, համակրանքի բանաձեւ մը յանձնեցին դեսպանին:

Ոստիկանութիւնը գաղտնի կը պահէ իր քննութեանց արդիւնքը: Ցարդ հարցաքննուած են 50 հոգի:

Մոսկուայի անթելը ուղղակի մեղսակից հռչակեց Իսրայէլի ոստիկանութիւնը:

---

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ բոլշեւիկները վերջնագիր մը ուղղեցին արեւմտեան Պերլինի բնակիչներուն, ըսելով թէ նորէն պիտի պաշարուին, եթէ վաւերացուի եւրոպական բանակի դաշնագիրը եւ եթէ չտապալեն իրենց քաղաքին ներկայ վարչութիւնը:

---

Այրի Տիկին Արմէն Շամլեան, Տէր եւ Տիկին Արամայիս Շամլեան, Տէր եւ Տկին Armand եւ Սօնիա Bostyn եւ զաւակը՝ Patrick, Տէր եւ Տիկին Արսէն Երկաթ, Պ. Բարգէն Շամլեան եւ իրենց զաւակները, Տէր եւ Տիկին Թոփալեան եւ զաւակը (Եգիպտոս), Տէր եւ Տիկին Կարապետ Վարդեան, Տէր եւ Տիկին Վահէ Կիւլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Մկրտիչ Կիւլեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Աղապաշեան եւ զաւակները (Ամերկա), Այրի Տիկին Ոսկի, Տէր եւ Տիկին Պասմաճեան եւ զաւակները (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Հաճիճանեան եւ զաւակները (Փարիզ), խորին ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, մեծ հօր, եղբօր, մօրեղբօր եւ ազգականին

ԱՐՄԷՆ ՇԱՄԼԵԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Գշ. 10 Փետր., 61 տարեկանին, իր բնակարանը 3 Bd.du Midi, Le Raincy.

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի այսօր, ուրբաթ 13 Փետր. ժամը 11ին, Ռենսիի գերեզմանատունը: Հաւաքոյթ իր բնակարանը:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ինչպէս այդ նկատել ներկայս:

---

### Հանդէս աւկոյթ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Բաշանի մասնաճիւղի:

Շաբաթ, 21 Փետրուար, ժամը 20,30էն մինչեւ կէս գիշեր: Պանեէօյի դպրոցի Préau des Filles գեղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux):

Ծոխ եւ խնամուած յայտագիր:

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Յ. Պարոնեանի «ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն:

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւններ:

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր:

Պիւֆէ մատչելի գիներով:

Մուտք 150 ֆրանք:

Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 188 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պանեէօ (Ligne de Sceaux):

Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն:

---



## ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ

ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ 60ԱՄԵԱԿԻ ԵՒ ՎԱԽՃԱՆՄԱՆ 45ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Կազմակերպութեամբ Վասպուրականի Հայրենակցական Միութեան

Այս Կիրակի, ժամը 10ին, Փրատոյի Ս. Սահակ-Մեսրոպ Մայր Եկեղեցիին մէջ: Ս. Պատարագէ ետք, Հոգեհանգստ ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ եւ համայն յայտնի ու անյայտ ննջեցեալ հերոսներու անմահ յիշատակին:

Բուն հանդէսը տեղի կ'ունենայ կէսօրէ ետք ժամը 3.30ին, Մազընոյի սրահին մէջ, 88 Ռիւ տ'Օպանեը, նախագահութեամբ Պ. Վ. ՓԱՆԴԻԿԵԱՆԻ: Կը բանախօսեն՝ Վեր. Գ. ԽԱՏԻԿԵԱՆ եւ Պ. Յ. ՊՕՂՈՍԵԱՆ:

Գեղարուեստական ընտիր բաժին:

Մուտքը ազատ է:

---

## ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

14 Փետրուար Շաբաթ ժամը 20.30ին, Sociétés Savantesի թատերասրահին մէջ, 8 rue Danton, métro St. Michel եւ Odéon:

Կը նախագահէ ընկեր Ս. ԹՈՐՈՍԵԱՆ

Կը խօսի ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Անտիս Քիւփէլեան (երգ), Գ. Ամիրախեան (արտասանութիւն), Քէսէլլի եւ Բեճօ (նուագ):

Դաշնակ Օր. Ա. ՏՕՆԱՊԵՏԵԱՆ

Շավիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Շանթ» թատերախումբը կը ներկայացնէ Լ. Շանթի «ՃԱՄԲՈՒ ՎՐԱՅ» ողբերգութիւնը:

Տախքերու մասնակցութեան համար մուտք 100 ֆրանք:

---



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

ՈՒՐԲԱԹ ժամը 21ին, Ակնունի ենթակոմիտէ:

ՇԱԲԱԹ ժամը 21ին Զաւարեան ենթակոմիտէ:

Կիրակի, ժամը 16ին, Արամ խումբը

Կիրակի ժամը 16ին ընկեր Կարօ ենթ.:

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 3ին Café Régent. Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Արեւմտ. Եւրոպայի Ուսանողական միութեան ժողովը այս ուրբաթ ժամը 8 ու կէսին, սովորական հաւաքատեղին:

ՊՈԼՍՈՅ ԿԵԴՐ. ՎԱՐԺԱՐԱՆԻ Նախկին Սաներու Միութիւնը թէյասեղան մը սարքած է ի պատիւ Կեդրոնականի հայերէնի ուսուցիչ եւ երիտասարդ լրագրող Պ. Մկրտիչ Հաճեանի, այս շաբաթ օր ժամը 5ին, Պ. Աճէմեանի ճաշարանը, 12 Rue Cadet: Այս առթիւ պիտի կատարուի նաեւ նոր վարչութեան ընտրութիւնը: Կը հրաւիրուին ընկերները:

---

ՄԱՐՍԷՅԼԻ ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Մ. Ը. Մ.ի վարչութիւնը կը ծանուցանէ Մարսէյլի եւ շրջանի հայ երիտասարդութեան թէ 1952-53ի արձանագրութիւնները սկսած են: Փափաքողները դիմեն Հինգշ. երեկոները, ժամը 8էն 9, իր սովորական հաւաքատեղին: Արձանագրութիւնները կը փակուին Մայիս 15ին:

---

Դաշնակահարուհի ՕՐ. Վ. ՃԻՆՃԵԱՆԻ

նուագահանդէսը Մարտ 17ին Salle Gaveau

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս ուրբաթ, 13 Փետրուար ժամը 21ին, ծանօթ հաւաքատեղին: Դասախօս՝ Պատ. ՍԻՍԼԵԱՆ: Նիւթ՝ «Դասակարգերու պայքարը եւ քրիստոնէութիւնը»:



## Սուրբ Մուրատեան Վարժարանի

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

Փետրուար 15ի եւ 22ի կիրակիներ ժամը 15ին:

Պիւֆէ մատչելի գիներով:

---

## Տարեկան մեծ պարահանդէս

Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ

Կիրակի 15 Փետր. ժամը 16էն մինչեւ կէս գիշեր: Cercle Militaireի սրահներուն մէջ:

Մեթրօ Saint Augustin:

Նուագ, ճոխ պիւֆէ, անակնկալներ եւն.:

---

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպութեամբ Հ. Յ. Դ. Ս. Լուի ենթ.ին եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Շրջ. կոմիտէին, շաբաթ, 14 Փետր. ժամը 20.30ին, Սէն Լու, «Էօժէր»ի սրահին մէջ:

Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբը կը ներկայացնէ Շիրվանզադէի ՉԱՐ ՈԳԻՆ, ղեկավարութեամբ Ղ. Փիլիկեանի:

× Նոյն ներկայացումը կը կրկնուի Փետր. 21ին, շաբաթ ժամը 20.30ին, նախաձեռնութեամբ Վալպարէլի «Արամ» խումբին:

---

Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ուիր այս դէպքին մէջ: Նոյն գրգռիչ հանգամանքն ունին ոչ միայն վարիչ կուսակցութեանց թերթերուն յօդուածները, այլ եւ անոնց ներկայացուցիչներուն եւ Իսրայէլի կառավարութեան անդամներուն խօսած ճառերը»:

Մանուցագիրը այս առթիւ կը յիշէ Իսրայէլի արտ. նախարար Շարէթի ճառը Ծունուար 9ին, ուղղակի թշնամական համարելով զայն: Եւ եռ կասեցնել իր դեսպանութիւնը, կը պահանջէ որ Իսրայէլի դեսպանատան պաշտօնեաներն ալ անյապաղ մեկնին Մոսկուայէն:

Աւելորդ է ըսել թէ յարաբերութեանց խզումը ծանր տպաւորութիւն գործեց Իսրայէլի եւ միջազգային շրջանակներու մէջ: Կը վախցուի որ աւելի զօրանայ հակասիոնական պայքարը:

Փետր. 9ի դէպքին առթիւ վար դրուած են հակաբոլշեւիկներ: Բոլորն ալ կ'ուրանան որեւէ մեղսակցութիւն, կարմիրներուն վրայ ձգելով մեղքը: Ոստիկաններու տեղ գինուորներ կը պաշտպանեն սովետական դեսպանատունը: Երուսաղէմի մէջ ալ վիսնալ ոստիկաններ դիրք բռնած են ամերիկեան, անգլ., լեհական, չեխոսլ. եւն. դեսպանատուններու շուրջ:

Հրապարակային ասուլիսի մը առթիւ, Իսրայէլի վարչապետ Բեն Գուրիոն դրաւ յայտարարութիւնները, կ'ուզէ անհաւատալի պատմութիւնները: «Ծրուած որոշումը լրումն է թունաւոր գրպարտութեան եւ բացորոշ թշնամութեան պայքարի մը որ երկար ատենէ ի վեր կը մղուի Իսրայէլի, Սիոնական շարժումին, հրէական կազմակերպութեանց եւ Հրեաներուն դէմ եւ որ չարաշուք հանգամանք մը ստացաւ վերջին ամիսներու ընթացքին»:

Իսրայէլեան նաւ մը որ 30,000 սնտուկ նարինջ պիտի տանէր Եափայէն Օտեսա, յետաձգեց մեկնումը: Հրէական թերթերը խստօրէն կը քննադատեն Մոսկուայի ընթացքը: Կը կարծուի թէ արեւմտեան երկիրներն ալ պիտի խզեն յարաբերութիւնները: Կարծողներ կան թէ Խ. Միութիւնը կ'ուզէ սիրաշահիլ Արաբները, տիրապետելու համար Միջին Արեւելքի մէջ:

Իսրայէլի թերթերը 2 ու կէս միլիոն կը հաշուեն կարմիր գիծէն անդին հաստատուած Հրեաներուն թիւը, վախ յայտնելով անոնց ճակատագրի մասին:

Սուրիոյ մէջ գոհ են յարաբերութեանց խզումէն, որուն հետեւանքով Իսրայէլ պիտի կորսնցնէ բանուկ շուկայ մը:

---

ՊՈՒՔՐԷՇԻ զին. ատեանը ցկեանս բանտարկութեան դատապարտեց քարիւղի երեք մասնագէտներ, իբրեւ լրտես: Միւս 18 ամբաստանեալներուն պատիժն է 3էն 25 տարի բանտ: Ռումանիոյ քարիւղին 95%ը Ռուսիա կը փոխադրուի:

---



---



---

# ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ

ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ 60ԱՄԵԱԿԻ ԵՒ ՎԱԽՃԱՆՄԱՆ 45ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Կազմակերպութեամբ Վասպուրականի Հայրենակցական Միութեան

Այս Կիրակի, ժամը 10ին, Փրատոյի Ս. Սահակ-Մեսրոպ Մայր Եկեղեցիին մէջ: Ս. Պատարագէ ետք, Հոգեհանգստ ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ եւ համայն յայտնի ու անյայտ ննջեցեալ հերոսներու անմահ յիշատակին:

Բուն հանդէսը տեղի կ'ունենայ կէսօրէ ետք ժամը 3.30ին, Մաղընոյի սրահին մէջ, 88 Ռիւ տ'Օպանեը, նախագահութեամբ Պ. Վ. ՊԱՆԴԻԿԵԱՆի: Կը բանախօսեն՝ Վեր. Գ. ԽԱՉԻԿԵԱՆ եւ Պ. Յ. ՊՕՂՈՍԵԱՆ:

Գեղարուեստական ընտիր բաժին:

Մուտքը ազատ է:

---

# ՓԵՏՐՈՒԱՐ 18Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

14 Փետրուար Շաբաթ ժամը 20.30ին, Sociétés Savantesի թատերասրահին մէջ, 8 rue Danton, métro St. Michel եւ Odéon:

Կը նախագահէ ընկեր Ս. ԹՈՐՈՍԵԱՆ

Կը խօսի ընկեր Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Ալեսիս Քիւփէլեան (երգ), Գ. Ամիրաեան (արտասանութիւն), Քէսէլլի եւ Բենօ (նուագ):

Դաշնակ Օր. Ս. ՏՕՆԱՊԵՏԵԱՆ

Շավիլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Շանթ» թատերախումբը կը ներկայացնէ Լ. Շանթի «ՃԱՄԲՈՒ ՎՐԱՅ» ողբերգութիւնը:

Ծախքերու մասնակցութեան համար մուտք 100 Փրանք:

---



ooooooooooooooooooooooooooooooooooooooo

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպութեամբ Հ. Յ. Դ. Ս. Լուի ենթ.ին եւ հովանաւորութեամբ Մարսէյլի Շրջ. կոմիտէին, շաբաթ, 14 Փետր. ժամը 20.30ին, Սէն Լու, «Էօվր»ի սրահին մէջ:

Նոր Սերունդի «Սիամանթօ» խումբը կը ներկայացնէ Շիրվանզադէի ՉԱՐ ՈԳԻՆ, ղեկավարութեամբ Ղ. Փիլիկեանի:

✕ Նոյն ներկայացումը կը կրկնուի Փետր. 21ին, շաբաթ ժամը 20.30ին, նախաձեռնութեամբ Վալպարէլի «Արամ» խումբին:

---





---

# ՑՈՒՑԱՏԵՏՐ

---

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

Կիրակի, ժամը 16ին, Արամ խումբը

Կիրակի ժամը 16ին ընկեր Կարօ ենթ.:

ԳՇ. ժամը 21ին «Թաթուլ» խումբը:

Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 3ին Café Régent. Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

---

## ԴԱՏԵՄՅԻՆԵՐՈՒ ԽՆՋՈՅՔ - ԵՐԵԿՈՅԹ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Դատեմի Ուսումնասիրաց Ընկերութեան Լիոնի մասնաճիւղին կողմէ, այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը 14էն կէս գիշեր, Ցոյսերու սրահին մէջ, 5 Rue Bonnefoi.

Գեղարուեստական ճոխ բաժին, բարեկենդանի հայրենի պարեր, նուագ, ճոխ պիւֆէ:

Մուտքը ազատ է: Կը հրաւիրուին Լիոնի բոլոր հայերը անխտիր:

---



---

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Ֆր. Կ. Խաչի Պանիէօ-Քաշանի մասնաճիւղը խորին շնորհակալութեամբ ստացած է երկու հազար Փր. Տէր եւ Տիկին Հ. Զրուանդեանէ եւ Տէր եւ Տիկին Սողոմոնեանցէ՝ իրենց թոռնիկին եւ զաւկին ծննդեան առթիւ:

---



---







**Le Gérant : A. NERCESSIAN**

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ետք լեհ քաղաքացի պիտի ըլլան եւ իրենց գոր - ծունէութիւնը պիտի ենթարկուի պետական հա - կակշիռի :

ԳՈՐԾԱԶՐԿՈՒԹԻՒՆԸ 10% աւելցած է Մէնի Նահանգին մէջ, 15 օրուան ընթացքին : Փետր. 16ին 67,000էր, Յունուար 15ին 61,190— Դեկտ. 31ին 54,340 : Գործ կը փնտռեն 211,000 հոգի :

ԵՈՒԿՈՍԼԱՒԻԱ 30 միլիոն տոլարի վարկ մը պիտի ստանայ Միջազգային Դրամատունէն, տասը տեսակ եւրոպական դրամներով :

ԱՆԳԼԻՈՅ ԵՒ ՖՐԱՆՍԱՅԻ միջեւ կատար - ուած բանակցութիւնները վերջացան : Վարչապետը եւ միւս Նախարարները Փարիզ վերադարձան առանց մեծ արդիւնք մը ձեռք բերելու : Չըրչիլ խոստացած է կարելի աջակցութիւնը ընծայել, ռազմական թէ տնտեսական տեսակէտով :

## Հանդէս Երեկոյթ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Բաչանի մասնաճիւղի :

Շաբաթ, 21 Փետրուար, ժամը 20,30էն մինչեւ կէս գիշեր : Պանեէօյի դպրոցի Préau des Filles գեղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux) :

Ճոխ եւ խնամուած յայտագիր :

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Յ. Պարոնեանի «ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն :

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւններ :

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր :

Պիւֆէ մատչելի գիներով :

Մուտք 150 ֆրանք :

Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 188 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պանեէօ (Ligne de Sceaux) :

Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն :

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

ՄԱՐՍԷՅԼ.— Որբախնամ - Աղքատախնամ Միութեան վիճակախաղը՝ 22 Փետր. կիր. օր ժամը 16ին Հ. Բ. Ը. Միութեանց սրահին մէջ, 19a, Rue Venture : Կան արժէքաւոր առարկաներ, մեծ պատկեր մը, թիկնաթոռ մը, Radio Radiola : Ինչպէս եւ բազմաթիւ ուրիշ առարկաներ : Տոմսակները գնելով աղքատի մը եւ որբի մը արցունքը պիտի սրբէք :

Դիմել Ծերիկեան գրատուն, 13 Rue des Dominicains, Մարսէյլ :

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Որբերու Օգնութեան Մարմինը (Փարիզահայ Տիկնանց Միութիւն) կը տեղեկացնէ թէ այսու - հետեւ իր կեդրոնի գրասենեակը բաց պիտի ըլլայ ամէն հինգշաբթի ժամը 10—12, Փարիզի Հայոց եկեղեցին, 15 rue Jean Goujon, ուր միութեան ներկայացուցիչը պիտի ընդունի բոլոր դիմումները եւ վճարումները :

Վարչութիւն

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Տէր եւ Տիկին Սահակ Յովհաննէսեան եւ զաւակը, այրի տիկին Սրբուհի Օկայեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Գրիգոր Ալթունեան (Գահիրէ), Վարեմէզեան, Մանկասարեան եւ Ճիհանեան ընտանիքները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն Հ. Յ. Դ. Արեւմտ. Եւրոպայի Կեդր. Կոմիտէին, Փարիզի Շրջ. Կոմիտէին, «Արծիւ» ենթակոմիտէին եւ «Յառաջ»ի խմբագրութեան, Բժ. Աբգարեանի եւ Բժ. Գ. Մեծատուրեանի, ինչպէս նաեւ բոլոր ընկերներու, հայ եւ ֆրանսացի բարեկամներու, որոնք օգտակիր հանդիսացան, եւ գրաւոր ու անձամբ, ինչպէս եւ դրամական նուէրներով՝ ցաւակցութիւն յայտնեցին ողբացեալ ՄԻՆԱՍ ԱԼԹՈՒՆԵԱՆի մահուան առթիւ :

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ողբացեալ ընկեր Մինաս Ալթունեանի մահուան առթիւ իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն, ընտանեկան պարագաներուն եւ «Արծիւ» ենթակոմիտէին.—

Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէն : Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր Վարչութիւնը :

Հ Յ. Դ. Անիէռ-Պուա Քոլոմպի Նոր Սերունդի նորակազմ վարչութիւնը (նաեւ իրենց ուսուցիչ Ս. Յովհաննէսեանի) :

Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէն :

Ֆր. Կ. Խաչի Պանիէօ-Բաչանի մասնաճիւղը, փոխան ծաղկեպսակի 9000 (ինը հազար) ֆրանք նուիրելով Հ. Յ. Դ. հիմնադրամին :

Լիոնէն Տէր եւ Տիկին Թադէոս Այվազեան, փոխան ծաղկեպսակի 500 ֆրանք նուիրելով Ֆր. Կ. Խաչի Պանիէօ-Բաչանի մասնաճիւղին : (Ստանալ «Յառաջ»էն) :

Փոխան ծաղկեպսակի Վահէ Ճիհանեան 1000 Ֆր. կը նուիրէ Հ. Յ. Դ. վեթ. ֆոնտին, Արտաշէս Մկրտիչեան՝ 500 Ֆր. Ֆր. Կ. Խաչի Պանիէօ-Բաչանի մասնաճիւղին :

## ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿԻ

ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹԵԱՆ 60ԱՄԵԱԿԻ ԵՒ ՎԱԽՃԱՆՄԱՆ 45ԱՄԵԱԿԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

կազմակերպութեամբ Վասպուրականի Հայրենակցական Միութեան

Այս Կիրակի, ժամը 10ին, Փրատոյի Ս. Սահակ-Մեսրոպ Մայր Եկեղեցիին մէջ : Ս. Պատարագէ ետք, Հոգեհանգիստ ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿի եւ համայն յայտնի ու անյայտ ննջեցեալ հերոսներու անմահ յիշատակին :

Բուն հանդէսը տեղի կ'ունենայ կէսօրէ ետք ժամը 3.30ին, Մազընոյի սրահին մէջ, 88 Ռիւ տ'Օպանեը, նախագահութեամբ Պ. Վ. ՊԱՆԴԻԿԵԱՆի : Կը բանախօսեն՝ Վեր. Գ. ԽԱՅԻԿԵԱՆ եւ Պ. Յ. ՊՕՂՈՍԵԱՆ :

Գեղարուեստական ընտիր բաժին :

Մուտքը ազատ է :



## Ծախու է

Ազատ տուն մը (pavillon) Ալֆորվիլի մէջ, 6 սենեակ, կառուած 20 ք. մ. որ կրնայ խանութի վերածուիլ, պարտէզ 200 ք. մ. հաւնոցով, երկու նկուղ : Ջուր, կազ, լոյս : Ամէնը շատ լաւ վիճակի մէջ, 33ter Rue Emile Gourg— շատ շահեկան գին (սակարկելի) :

Դիմել ուղղակի տիրոջ՝ 2 Bd. Carnot, Alfortville.



## ԹՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի ընդհ. ժողովը, այս հինգշաբթի Ազգ. Տան մէջ, 32 Rue de Trévise, Métro Cadet, ժամը ճիշդ 21,30ին : Շատ կարեւոր օրակարգ :

1. Զեկոյց Պատգ. ժողովի, 2. Ընտրութիւն նոր վարչութեան, 3. Ընթացիկ հարցեր :

Հայերէնի դասերը ժամը 20.15ին :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ .—

Կիրակի, ժամը 16ին, Արամ խումբը

Կիրակի ժամը 16ին ընկեր Կարօ ենթ. :

ԳՇ. ժամը 21ին «Թաթուլ» խումբը :

### «ՅԱՌԱՋ»Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացանք Տիկին Նաքըշքարեանէ 800 Ֆր. «ՅԱՌԱՋ»ի տարածման համար :

## 22-րդ Տարեկան Ցերեկոյթ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ԱՐԵՆՈՅՇՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՐԻՆԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

Կիրակի 8 Մարտ կէսօրէ վերջ ժամը 2.30ին

Salle de la Chimie, 28bis Rue St. Dominique

Métro Solférino կամ Invalides

Կը մասնակցին ֆրանսական սկաուտական միութիւնները եւ Փարիզի օտար սկաուտ խումբերը : Արիները պիտի ներկայացնեն սկաուտական միջազգային կեանքէ կենդանի պատկերներ, երգեր եւ պարեր :

Մոգական լապտերով պիտի ներկայացուին տեսարաններ միութեան 1952ի գործունէութեան մասին :

Արենոյշները կը ներկայացնեն հայկական պարերու եւ գեղջկական տեսարաններու նոր շարքմը :

Մասնաւոր պատրաստութեամբ պիտի ներկայացուի նաեւ Մոլիէռի «Երեւակայական հիւանդը» Արիներու եւ Արենոյշներու կողմէ : :

Մուտք 200 եւ 300 Ֆր. : ՊԻՒՖԷ :



## Ուսուցչուհի կ'ուզուի

Օգնական խոհարարուհի մը գիշերօթիկ վարժարանի մը համար : Լաւ վճարում : Դիմել թերթիս վարչութեան :

## Եւրոպայի հոգերը

Կարգ մը թերթեր կը գրեն.— Ֆրանսայի վարչապետը յուշագիր մը ղրկած է Լոնտոն, շատ կարեւոր բովանդակութեամբ: Յուշագիրը շարք մը ձեւեր կ'առաջարկէ, որպէսզի Անգլիան աւելի մօտէն կապուի եւրոպեան բանակին:

Յուշագիրը դիտել կու տայ թէ Պ. Տալըսի այցելութենէն երեք ամիս վերջ Եւրոպա ստիպուած է նոր փաստեր տալ Մ. Նահանգներուն՝ եւրոպ-եան բանակի աշխուժացման մասին: Փարիզ կ'ուզէ որ ոչ միայն անգլեւամերիկեան երաշխաւորու-թեան պայմանաժամը 20 տարիէն 50ի բարձրա-նայ, այլ եւ Անգլիա յանձն առնէ բանակ մը պա-հել ցամաքային Եւրոպայի մէջ: Ուրեմն տեսակ մը գինակցութիւն:

× Մ. Նահանգներու Ծերակոյտին յատուկ յանձնախումբը տեղեկագիր մը հրատարակեց ո-րով կ'առաջարկէ կէս առ կէս կրճատել Եւրոպայի ամերիկեան զօրքը, որպէսզի դաշնակիցները ստանձնեն ռազմական խարիսխներու պահպանու-մը, մինչեւ որ ամերիկեան ուժ հասնի՝ պատե-րազմի մը պարագային: Այս յանձնախումբին ան-դամները անցեալ աշնան ... մը կա-տարած էին Եւրոպայի եւ Միջին Արեւելքի մէջ, կտրելով 45,000 քիլոմեթր եւ քննելով 60 խա-րիսխներ:

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՔՈՐԷԱՅԻ գործերը եւ Չինաստանի պաշար-ման խնդիրը քննելու համար, երէկ բացառիկ ժո-ղով մը գումարուեցաւ Ուաշինկթընի մէջ, նախա-գահութեամբ Այզընհաուըրի:

ԱԹԷՆՔԻ ԵՒ ԱՆԳԱՐԱՅԻ ՄԷՋ խորհրդակ-ցութիւններ պիտի կատարուին այսօր, երեքշաբ-թի, դաշինք մը կնքելու համար Յունաստանի եւ Թուրքիոյ միջեւ: Անգարայի ժողովը պիտի քննէ զին. խնդիրներ, Աթէնքի ժողովը՝ քաղաքական:

ՄԱՐԴԱՏԱՐ ԿԱՌԱԽՈՒՄԲ մը գիծէն դուրս ելաւ Պաւի-Նափոլի ճամբուն վրայ: 23 հոգի մե-ռան, 80 հոգի վիրաւորուեցան:

ՊԵՐԼԻՆԻ արեւելեան շրջանին ղաղտնի ոստի-կանութեան պետը, Հայնց Հարթնաք, արեւմըտ-եան Գերմանիա փախաւ, իր խորհրդականին հետ:

ԵՐԿՈՒ ՄԱՀԱՊԱՐՏՆԵՐԸ, այր եւ կին Ռո-զէնպէրկ անձկութեամբ կը սպասեն վերջնական վճիռին որ պիտի տրուէր երէկ: Պապն ալ միջամտած է եղեր, ինչպէս կը պնդէ իր նուիրա-կը: Բայց կը կարծուի թէ ուշ մնացած է, քանի որ Այզընհաուըր մերժեց ներում շնորհել:

#### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Իթալի-ժանթիյյի շրջանի Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի դասախօսութիւնը՝ այս Չորեքշաբթի ժա-մը 20,30էն 3,30, ծանօթ նոր սրահին մէջ: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ՓԵՏՐՈՒԱՐ 18-Ը ԼԻՈՆԻ ՄԷՋ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՎԱՐԴԱՆԵԱՆ ԿՈՄԻՏԷԻ
ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ՍԻԱՄԱՆԹՕ» ԽՈՒՄԲԻՆ

Այս Կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ 10
Յոյներու սրահը՝ 5 Rue Bonnefoi.

Կը խօսի՝ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

Գեղարուեստական բաժին: Երգ, խմբերգ, արտասանութիւն, հայկ. եւ եւրոպ. պարեր:

Ծոխ պիֆէ մատչելի գիներով: Մուտքը ազատ է:

SALLE GAVEAU 45 RUE LA BOETIE
Ուրբաթ 20 Փետրուար ժամը 21ին
ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

## Լիսիա Կարին

## (Ջութակահար)

Մասնակցութեամբ՝ Marcel Delannoyի եւ Lucienne Delforgeի (դաշնակ)

Դաշնակի ընկերակցութեամբ՝ André Collardի

ՅԱՅՏԱԳԻՐ.— Մոնթէվէրտէ, Շումէոթ, Ռա-վել, Տըլանուա, Մանուէլ Տը Ֆալյա, Սայաթ Նո-վա, Սաթեան, Ղազարոսեան:

Տոմսերու համար դիմել՝ սրահը, Durandին, 4 Place de la Madeleine, S.V.P. եւ Իշխանյանին 73 Fg. Poissonnière, Paris (9): Գին 200 ֆրանքէն 700 ֆրանք: Հեռաձայն Pro. 64-23:

Մասնաւոր տեղ ուսանողներու, Activités musicalesի եւն.:

## Համազգայինի Ծղաօնը

Փարիզի եկեղեցին ստացանք հետեւեալ ազդը.—

Այս տարի ալ, Ապրիլեան Համազգային սգա-տօնը պիտի կազմակերպուի նախաձեռնութեամբ երեք յարանուանութեանց:

Տեղը եւ ժամանակը պիտի ծանուցուի յառա-ջիկային:

Վստահ ենք որ Փարիզի եւ շրջակայքի հայ հասարակութիւնը հոծ բազմութեամբ ներկայ պիտի ըլլայ համազգային յարգանքի այս արտա-յայտութեան:

## Խնջոյք - պարահանդէս

Կազմակերպուած Տարօն-Տուրուբերանի Հայ-րենակ. Միութեան կողմէ, Վարդանանց տօնին առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15-24, Salle Franco-Belgeի մէջ, Rue Vergniaud 59 Paris, Métro Corvisart.

Կը նախագահէ հայրենակից Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը բանախօսէ Պ. Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ: Գեղար-ուեստական բաժին (երգ եւ արտասանութիւն):

Հայկական, ֆրանս. եւ սպանիական պարեր, մասնակցութեամբ Կ. ՍԱՐԵԱՆի նուագախումբին:

## Հանդէս եռեկոյթ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Քա-ղաքի մասնաճիւղի:

Շաբաթ, 21 Փետրուար, ժամը 20,30էն մինչեւ կէս գիշեր: Պանեէօյի դպրոցի Preau des Filles գե-ղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux):

Ծոխ եւ խնամուած յայտագիր:

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Յ. Պարոնեանի «ՄԵ-ԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն:

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւն-ներ:

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր:

Պիւֆէ մատչելի գիներով:

Մուտք 150 ֆրանք:

Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 188 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պան-եէօ (Ligne de Sceaux):

Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն:

## Ծախու է

Ազատ տուն մը (pavillon) Ալֆորվիլի մէջ, 6 սենեակ, կառած 20 ք. մ. որ կրնայ խանութի վե-րածուիլ, պարտէզ 200 ք. մ. հանոցով, երկու նկուղ: Ջուր, կազ, լոյս: Ամէնը շատ լաւ վիճակի մէջ, 33ter Rue Emile Gourg— շատ շահեկան գին (սակարկելի):

Դիմել ուղղակի տիրոջ՝ 6 Bd. Carnot, Alfortville.



## ՑՈՒՑԱՏԵՍՔ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահա-րոնեան» խումբի ընդհ. ժողովը, այս Հինգշաբթի Ազգ. Տան մէջ, 32 Rue de Trévise, Métro Cadet, ժամը ճիշդ 21,30ին: Շատ կարեւոր օրակարգ:

1. Զեկոյց Պատգամ. ժողովի, 2. Ընտրութիւն նոր վարչութեան, 3. Ընթացիկ հարցեր:

Հայերէնի դասերը ժամը 20.15ին:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

ԳՇ. ժամը 21ին «Թաթուլ» խումբը:

ՖԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւա-քոյթը այս Չորեքշաբթի իրիկուն, ժամը 9ին, Քառտէ սրճարանին վերնայարկը: Կը խօսի Պ. ԳՐԻԳՈՐ ՃԻԶՄԷՃԵԱՆ: Նիւթ՝ Քննական տեսու-թիւն հայ գաղթաշխարհին:



## Մեքենագործ կ'ուզուի

Օգնական խոհարարուհի մը գիշերօթիկ վար-ժարանի մը համար: Լաւ վճարում: Դիմել Թեր-թիս վարչութեան:



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

տարբար, անսպասելի մեքենայութիւն մը ծայր տուաւ այդ գործը ձախողանքի մատնելու համար։ Հետեւաբար, ինծի կը մնար անմիջապէս հրաժարիլ Մելքոնեան Մատենաշարի եւ Նուպարեան Մատենադարանի յանձնախումբի անդամակցութենէն, ասկէ հինգ տարի առաջ։

ԶԱՐԵՀ ԳԱԶԱԶԵԱՆ

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Իթալի-Ժանթիյյի շրջանի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի դասախօսութիւնը այս Չորեքշաբթի ժամը 20,30էն 9,30, ծանօթ նոր սրահին մէջ։ Կը խօսի ճշդապահ ըլլալ։

## Պանսէօ Պարահանդէս

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Կաշառ մասնաճիւղի։

Շաբաթ, 21 Փետրուար, ժամը 20,30էն մինչեւ կէս գիշեր։ Պանեէօյի դպրոցի Préau des Filles գեղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux)։

Ճոխ եւ խնամուած յայտագիր։

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Ց. Պալոնեանի «ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն։

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւններ։

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր։

Պիւֆէ մատչելի գիներով։

Մուտք 150 ֆրանք։

Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 186 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պանեէօ (Ligne de Sceaux)։

Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն։

## Մեծ պարահանդէս

Հ. Բ. Ը. Մ. ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

22 Փետրուար, կիրակի օրը ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, Hôtel George Vի շքեղ սրահներուն մէջ։

Նախագահութեամբ Ծերակուտական Պ. VERDEILLEի եւ ԶԱՐԵՀ ՊԷՅ ՆՈՒՊԱՐԻ։

Օժանդակութեամբ՝ ՍԻՄԻԹԵԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐՈՒ Օրքէստրի Իբէօս Փուէօլ, Պանտ, աբրաքսիօնաեր

Նախապէս ապահովեցէք ձեր սեղանները, հեռախօսելով Pro. 82-36 եւ կամ Tro. 03-18։

Տոմսերը կը գտնէք Պ. Արամ Հանչէրի քով, 9 rue Saulnier, Paris (9)։

SALLE GAVEAU 45 RUE LA BOETIE

Ուրբաթ 20 Փետրուար ժամը 21ին

ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

## Լիզիա Կարին (Իշխանեան)

Մասնակցութեամբ՝ Marcel Delannoyի եւ Lucienne Delforgeի (դաշնակ)

Դաշնակի ընկերակցութեամբ՝ André Collardի

ՅԱՅՏԱԳԻՐ.— Մոնթէվէրտէ, Շուպէրթ, Ռաւէլ, Տըլանուա, Մանուէլ Տը Ֆայա, Սայաթ Նովա, Սաթեան, Ղազարոսեան։

Տոմսերու համար դիմել՝ սրահը, Durandին, 4 Place de la Madeleine, S.V.P. եւ Իշքալացեանի 73 Fg. Poissonnière, Paris (9)։ Գին 200 ֆրանքէն 700 ֆրանք։ Հեռաձայն Pro. 64-23։

Մասնաւոր տեղ ուսանողներու, Activités musicalesի են.։

## ԼԻՈՆԻ ԱԶԳ. ՄԻՈՒԹԵՆԷՆ

ԼԻՈՆ.— Տ. Վռամշապուհ քահանայ հիւանդ ըլլալով ստիպուած է երեք ամիս եկեղեցիէն բացակայիլ։ Կը խնդրուի շրջանի կրօն. ընկերակցութիւններէն Ս. պսակի կամ մկրտութեան համար Ազգ. Միութեան լուր տալ տասը օր, իսկ թաղումի համար երեք օր առաջ, որպէսզի բոլորին գոհացում տրուի։ (Մէկ քահանար միայն ունինք)։

Գաղթ. գրասենեակը վերաբացուած ըլլալով՝ Ազգ. Միութիւնը հրահանգ ստացած է հայ գաղթականներու ծննդեան, ամուսնութեան եւ այլ վկայագիրերու համար օգնել կեդր. գրասենեակին։ Լիոնի եւ շրջանի Հայերը կրնան դիմել 69 Rue Louis Blanc, Հայոց եկեղեցին ամէն օր ժամը 4էն 7 կէս օրէ վերջ։

## Համազգային Սգասօն

Փարիզի եկեղեցին ստացած հետեւեալ ազդը.—

Այս տարի ալ, Ապրիլեան Համազգային սգատօնը պիտի կազմակերպուի նախաձեռնութեամբ երեք յարանուանութեանց։

Տեղը եւ ժամանակը պիտի ծանուցուի յառաջիկային։

Վստահ ենք որ Փարիզի եւ շրջակայքի հայ հասարակութիւնը հոծ բազմութեամբ ներկայ պիտի ըլլայ համազգային յարգանքի այս արտայայտութեան։

## Խնջոյք - պարահանդէս

Կազմակերպուած Տարօն-Տուրուբերանի Հայրենակ. Միութեան կողմէ, Վարդանանց տօնին առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15-24, Salle Franco-Belgeի մէջ, Rue Vergniaud 59 Paris, Métro Corvisart.

Կը նախագահէ հայրենակից Խ. ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը բանախօսէ Պ. Մ. ԳՈՒՑՈՒՄՃԵԱՆ։ Գեղարուեստական բաժին (երգ եւ արտասանութիւն)։

Հայկական, Ֆրանս. եւ սպանիական պարեր, մասնակցութեամբ Կ. ՍԱՐԵԱՆի նուագախումբին։

## Ծախու է

Ազատ տուն մը (pavillon) Ալֆորվիլի մէջ, 6 սենեակ, կառած 20 ք. մ. որ կրնայ խանութի վերածուիլ, պարտէզ 200 ք. մ. հաւնոցով, երկու նկուղ։ Ջուր, կազ, լոյս։ Ամէնը շատ լաւ վիճակի մէջ, 33ter Rue Emile Gourg— շատ շահեկան գին (սակարկելի)։

Դիմել ուղղակի տիրոջ՝ 6 Bd. Carnot, Alfortville.



## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆԻ տարեկան ընդհ. ժողովը այս ուրբաթ իրիկուն Café Regent, 70 Rue Lafayette։ Օրակարգ՝ վարչութեան համարատուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։

Կը հրաւիրուին բոլոր անդամները։

ՖՐ. Կ. ԽԱՉԻ ԿԵ.Ր. վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի մասնաճիւղերը այս շաբաթ ժամը 3ին, Տիկին Զիթունիի բնակարանը՝ 13 Rue Caumartin.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ.—

Շաբաթ ժամը 21ին, Վռամեան ենթ։

Շաբաթ ժամը 21ին, «Հայաստան ենթ.։

Կիրակի ժամը 16ին »Իշխան» խումբ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի ընդհ. ժողովը, այս հինգշաբթի Ազգ. Տան մէջ, 32 Rue de Trévise, Métro Cadet, ժամը ճիշդ 21,30ին։ Շատ կարեւոր օրակարգ։

1. Ձեկոյց Պատգ. ժողովի, 2. Ընտրութիւն նոր վարչութեան, 3. Ընթացիկ հարցեր։

Հայերէնի դասերը ժամը 20.15ին։

ՖԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս Զորեքշաբթի իրիկուն, ժամը 9ին, Բատէ սրճարանին վերնայարկը։ Կը խօսի Պ. ԳՐԻԳՈՐ ՃԻԶՄԷՃԵԱՆ։ Նիւթ՝ Քննական տեսութիւն հայ գաղթաշխարհին։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Հանգուցեալ ՄԻՆԱՍԵԱՆ ԱՐՄԵՆԱԿԻ (Քարտուղար Առաջնորդարանի) մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ։ Կը հրաւիրուին իր յիշատակը յարգող ազգականներ եւ բարեկամներ։

## Սուրբ Մուրատեան Վարժարանի

ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

Փետր. 2 ի Կիրակին, ժամը 15ին։

Պիւֆէ մատչելի գիներով։

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Պօտուրեան ընտանիքը եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ թէ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր ու ազգականին՝ ողբացեալ ՆՇԱՆ ՊՕՏՈՒՐԵԱՆԻ դառն մահուան առթիւ որ տեղի ունեցաւ Փետր. 16ին Տեսինի մէջ։

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵԽԵԿՈՅԹ

Կազմակերպուած Պորտոյի Կապոյտ Խաչի կողմէ, Նախագահութեամբ Տիկ. Ս. Հալաճեանի, այս կիրակի ժամը 15ին, Պորտոյի Առեւտր. Սենեակի սրահներուն մէջ։ Կ ներկայացուի զաւեշտ մը։ Երգ, Նուագ, արտասանութիւն։

## ԾԱԽՈՒ ՏՈՒՆ ԵՒ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ

Նիսի մէջ, Rue d'Abray— Angle Gutemberg, ունիմ երեք սենեակով նորոգուած վաճառատուն մը։ Ամբողջ օրը արեւ ունի, որեւէ առեւտուր կրնաք ընել։ Վաճառատունը ունի երկու «վիթրին»։

Դիմել տիրոջը՝ ՍԱՖՐԻԶ Վահան Թէրզեանի, Ծախու է 2,900,000 ֆրանքի։
44 Bd. Auguste Raynaud, NICE.



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ՈՂՈՂՈՒՄՆԵՐԸ ահռելի աւերներ գործած են Ատանայի շրջանին մէջ: Սէյհուն եւ Ճէյհան գետերուն ջուրերը մինչեւ հինգ մեթր բարձրացան: 14 գիւղեր ողողուեցան, 28 գիւղ վտանգուած են: Սէյհուն 60 մեթր լայնքի մը վրայ ամբարտակ մը քանդեց: Եփրատ եւ Տիգրիս գետերն ալ յորդեցան, ողողումներ պատճառելով Սուրիոյ եւ Իրաքի մէջ:

ԱՆԳԼԻՈՅ վերջին ողողումներուն հետեւանքով մեռած են 307 հոգի, այլուր տեղափոխուած՝ 32,000: Ողողուած են 25,000 տուներ, քանդուած՝ 400: Թումբերու վրայ բացուած են 1200 ճեղքեր, որոնք առժամապէս փակուած են շնորհիւ 18,500 զինուորներու եւ 7000 բանուորներու:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Հայր Քիպարեան, Տէր եւ Տիկին Թադւոր Քիպարեան, Տէր եւ Տիկին Ալէքսանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Պալեան եւ զաւակները, ինչպէս նաեւ բոլոր պարագաները խորին շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր մասնակցեցան իրենց սուգին ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԹԱԳՈՒՀԻ ՔԻՊԱՐԵԱՆԻ (Ծնեալ Մակարեան, Պանտրմացի) մահուան առթիւ:

×

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Այրի Տիկին Արմէն Շամլեան եւ զաւակները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, հեռագրով կամ նամակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԱՐՄԷՆ ՇԱՄԼԵԱՆԻ

մահուան առթիւ::

Այս առթիւ ծաղկեպսակէ աւելցած 2600 ֆր.ը Տիկին Շամլեանը յատկացուցած է կարօտ ուսուցչուհիի մը:

×

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Օննիկ Պայրամեան, Պայրամեան, Պործակեան, Աբրահամեան ընտանիքները եւ իրենց պարագաները իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ կամ նամակով իրենց ցաւակցութիւնները յայտնեցին ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԼՈՒՍԱԲԵՐ ՊԱՅՐԱՄԵԱՆԻ (ծնեալ Ընքապապեան) մահուան առթիւ:

ooooooooooooooooooooooooooooooooooooooooooo

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ.— Այրի Տիկին Եղիս Քըրքքէսէլեան եւ զաւակները կը յայտարարեն որ այս Կիրակի Փարիզի հայ եկեղեցիին մէջ, ժամը 10,30ին, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ ՂԱԶԱՐՈՍ ՔԸՐՔՔԷՍԷԼԵԱՆԻ համար: Կը խնդրուի իր յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ:





# ՓԵՏՐՈՒԱՐ 18-Ի ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Լիոնի մէջ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՎԱՐԱՆԴԵԱՆ ԿՈՄԻՏԷԻ
ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ՍԻԱՄԱՆԹՕ» ԽՈՒՄԲԻՆ

Այս Կիրակի, կէսօրէ վերջ ժամը 3էն մինչեւ 10
Յոյներու սրահը՝ 5 Rue Bonnefoi.
Կը խօսի՝ Պ. Կ. ՏԷՐՄՈՅԵԱՆ

## Վալանսի մէջ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէին եւ մասնակցութեամբ Նոր Սերունդին, այս կիրակի ժամը 15ին, Ահարոնեան ակումբին մէջ:

## Խնճոյք - պարահանդէս

Կազմակերպուած Տարօն-Տուրուբերանի Հայրենակ. Միութեան կողմէ, Վարդանանց տօնին առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15-24, Salle Franco-Belgeի մէջ, Rue Vergniaud 59 Paris, Métro Corvisart.

Կը նախագահէ հայրենակից Լ. ՏՕՆԻԿԵԱՆ: Գեղարուեստական բաժին (երգ եւ արտասանութիւն):

Բանախօսութիւն: Կ'երգեն Տիկ. Արաքսի Մուրատեան, Օր. Քնեազեան, Աւետիս Քիւփէլեան, Ստեփան Պօղոսեան: Կ'արտասանեն Զոհրապ Մուրատեան, Օր. Մառըլէն Մկրտիչեան, Տարօն Տօնիկեան:

Հայկական, ֆրանս. եւ սպանիական պարեր, մասնակցութեամբ Կ. ՍԱՐԵԱՆի նուագախումբին:



ooooooooooooooooooooooooooooooooooooooooooo

## Մեծ պարահանդէս

Հ. Բ. Ը. Մ. ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
22 Փետրուար, կիրակի օրը ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, Hôtel George Vի շքեղ սրահներուն մէջ :

Նախագահութեամբ Ծերակուտական
Պ. VERDEILLEի եւ ԶԱՐԵՀ ՊԷՅ ՆՈՒՊԱՐԻ :
Օժանդակութեամբ՝ ՍԻՄԻԹԵԱՆ ԵՂԲԱՅՐՆԵՐՈՒ Օրքէսթր Ռիքօս Գռէօլ, Պանտ, աքրաքսիոններ

Ցարգելի հայրենակիցներէն կը խընդրուի սեփականաբար ապահովել իրենց սեղանները հեռախօսելով Փռովանս 82–38 եւ Թրօքատէրօ 03,18:

Տոմսերը կը գտնէք Պ. Արամ Հանչէրի քով, 9 rue Saulnier, Paris (9):



# ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԿՐԸՆՕՊԼ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան կոմիտէի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 20.30ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՖՐ. Կ. ԽԱՉԻ Կեդր. վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի մասնաճիւղերը այս շաբաթ ժամը 3ին, Տիկին Զիթունիի բնակարանը՝ 13 Rue Caumartin.

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ .—

Կիրակի ժամը 16ին »Իշխան» խումբ:

Կիրակի ժամը 16ին «Նիկոլ Դուման» խումբը:

Կիրակի ժամը 16ին «Խաժակ» խումբը:

ԼԻՈՆ.— Ֆր Կ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ՝ իր անդամուհիները, առաջիկայ, 23 փետր. երկուշաբթի երեկոյ ժամը8.30ին, Յոյներու սրահը, 5 Ռիւ Պօնֆուա, Լիոն, Ռիւ Ֆօլ Պէռի մօտիկը: Խիստ կարեւոր օրակարգ: 28 մարտ 1953ի պարահանդէսի կարգադրութիւնը: Կը խընդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ: Ներկաներու թիւը օրինական պիտի համարուի:

## Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԺՈՂՈՎ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. Վարչութեան ներկայացուցչական ժողովը այս կիրակի 22 փետր. ժամը 5ին, Ազգ. Տան մէջ, 32 Ռիւ տը Թրէվիզ, Գատէ: Ժողովէն վերջ ընկերական հաւաքոյթ:

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Պոստոյի Կապոյտ Խաչի կողմէ, Նախագահութեամբ Տիկ. Ս. Հալաճեանի, այս կիրակի ժամը 15ին, Պոստոյի Առեւտր. Սենեակի սրահներուն մէջ: Կ ներկայացուի զաւեշտ մը: Երգ, Նուագ, արտասանութիւն:

ooooooooooooooooooooooooooooooooooooooooooo

## Հանդէս երեկոյթ

Նախաձեռնութեամբ Նոր Սերունդի Պանեէօ Քաչանի մասնաճիւղի :

Շաբաթ, 21 Փետրուար, ժամը 20,30էն մինչեւ կէս գիշեր: Պանեէօյի դպրոցի Préau des Filles գեղեցիկ սրահին մէջ (69, rue d'Arcueil, Bagneux):

Ճոխ եւ խնամուած յայտագիր :

Ա. ՄԱՍ.— Պատկեր մը Յ. Պարոնեանի «ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐ»էն :

Բ. ՄԱՍ.— Հայկ. երգ, հայկ. եւ եւրոպ. նուագ (դաշնակ եւ կիթառ), արտասանութիւններ:

Գ. ՄԱՍ.— Հայկ. եւ կովկասեան պարեր :
Պիւֆէ մատչելի գիներով :
Մուտք 150 ֆրանք :
Հաղորդակցութեան միջոցներ.— Porte d'Orléansէն առնել հանրակառք թիւ 188 եւ իջնել Պանեէօ (Marcel Bonnet), կամ առնել մեթրօ եւ իջնել Պանեէօ (Ligne de Sceaux) :
Հանդէսը կը սկսի ճիշդ ժամուն :

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Մարսէյլ քաղաքի Ռոստոմ խումբին կողմէ, երկուշաբթի ժամը 21ին, Ահարոնեան ակումբին մէջ: 26 ռիւ տէ Քօնվալէսան:

Կը դասախօսէ ընկեր Տ. ԹԱԴՈՅԵԱՆ. դասախօսութենէն վերջ վիճաբանութիւն: Մուտքը ազատ է բոլորին համար :




Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

Ֆրանսայի համայնավար կուսակցութեան պաշտօնական շաբաթաթերթը, « Ֆրանս–Նուվէլ » կը գրէ թէ Հավրի եւ Ռուանի մէջ ալ նուազած են շարքերը: Բջիջներու թիւը, որ 123 էր 1946ին, 59ի իջած էր 1952ին: Քուէներու թիւն ալ 120,000էն իջած էր 90,000ի:

ԵՐԿՈՒ ԿԱՌԱԽՈՒՄԲԵՐ ընդհարեցան Անիէռի գծին վրայ (Փարիզ): 32 հոգի վիրաւորուեցան, չորսը ծանրապէս:

ԹՐԻԷՍԹԷԻ խնդիրը լուծելու համար նոր ծրագիր մը յօրինած է Անգլիա, — տեւական դարձնել այդ երկրամասին ներկայ բաժանումը, — (մէկ մասը Իտալիոյ, մէկ մասը Եուկոսլաւիոյ):

ԻՏԱԼԻՈՅ նախկին վարչապետներէն Նիթթի, որ 85 տարեկան էր, մեռաւ առջի օր: Հակառակ էր Փաշականութեան: Խիստ բացասական դեր կատարեց Հայկ. դատին դէմ, մանաւանդ Սան Ռեմոյի մէջ:

ՆՈՐ ԵՒ «ԳԵՐԱՐԴԻԱԿԱՆ» զէնքեր պատրաստած են Մ. Նահանգները եւ Անգլիա, օգտագործելով հիւլէական ուժերը:

ՄԵԾ ՌԱԶՄԱՓՈՐՁԵՐ պիտի կատարուին Միջերկրականի մէջ, յառաջիկայ Մարտին:

ՄՈՍԿՈՒԱՅԻ «Փրաւտա»ն մանրամասնօրէն կը պատմէ թէ ինչպէս երեւան հանուեցաւ ինը բժիշկներուն «դաւաճանութիւնը»: Գործին հերոսուհին է Տիկին Լիդիա Տիմաչուկ, «որ չէ վարանած երեւան հանել թշնամի գործակալները բժըշկական գիտութեան ականաւոր դէմքերուն մէջ»: Ինքն ալ բժիշկ ըլլալով, Տիկինը դիտեր է որ մեծ գիտուն մը սխալ ախտաճանաչում կը կատարէ հիւանդի մը վրայ. « ուրեմն սխալ դարմանում եւ մահ»: Գիտունը մեծ փորձառութիւն ունի եւ սակայն... Տիկին Լիդիա յամառօրէն հետապնդելով խնդիրը, « իր դիմացը կը գտնէ թշնամի մը», կը մաքառի եւ ի վերջոյ մէջտեղ կը հանէ բոլոր դաւադիրները, չահելով Լենինի շքանշանը...

Ե. ԴԱՐՈՒ ԱՍՏՈՒԱԾԱՇՈՒՆՉ մը ծախու հանուած է Մ. Նահանգներուն մէջ: Գրուած է արամերէն: Գինը մէկ միլիոն տոլար:

## ԸՆԿԵՐ ՀՐԱՆԴ ՔԻՕՍԷԵԱՆԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ

Ողբացեալ ընկ. Հրանդ Քէօսէեանի յուղարկաւորութիւնը պիտի կատարուի երկուշաբթի առտու ժամը 9,15ին:

Հաւաքուիլ Օբիթալ Պիշա, 24 Ավընիւ տը լա Բօռթ Սէն Ուէն, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթենի գերեզմանատունը:

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ ԳՈՀԱՐԻԿ ՂԱԶԱՐՈՍԵԱՆԻ

Սալ Շոփէն - Փլէյէլ, Մարտ 19ին հինգշաբթի իրիկուն:

Մանրամասնութիւնները յաջորդով:






## «ՅԱՌԱՋ ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պ. Գասպար Թիւլէկեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ Պ. Օհանեանի, Պ. Այրէս:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆԻ

Salle Gaveau, 45 - 47 rue la Boëtie,
Կիրակի 1 Մարտ, ժամը 17ին
Գին՝ 100էն 600 ֆրանք:

## Խնջոյք - պարահանդէս

Կազմակերպուած Տարօն-Տուրուբերանի Հայրենակ. Միութեան կողմէ, Վարդանանց տօնին առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 15-24, Salle Franco-Belgeի մէջ, Rue Vergniaud 59 Paris, Métro Corvisart.

Կը նախագահէ հայրենակից Լ. ՏՕՆԻԿԵԱՆ: Գեղարուեստական բաժին (երգ եւ արտասանութիւն):

## ԿԱՐԵՒՈՐ՝ ՄԵՌԵԼԱԹԱՂԻ ՀԱՄԱՐ

Որեւէ դիմում ընելէ առաջ մեռելաթաղի ընկերութիւններու, լաւ կ'ըլլայ որ մեր հայրենակիցները հեռախօսեն Ելիզէ 67–03 կամ ներկայանան Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանատունը, որ հարկ եղած բոլոր նպաստաւոր թելադրութիւնները եւ կարգադրութիւնները կ'ընէ դիւրացնելու համար մեր հայրենակիցներուն գործը:

Այս կերպով զանազան թիւրիմացութիւններ կը դարմանուին եւ պաշտօններու կանոնաւորութիւնը կ'ապահովուի:

Դիւան Վարչութեան







## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԼԻՈՆ.— Ֆր Կ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ՝ իր անդամուհիները, առաջիկայ, 23 փետր. երկուշաբթի երեկոյ ժամը 8·30ին, Յոյներու սրահը, 5 Ռիւ Պօնփուա, Լիօն, Ռիւ Փօլ Պէռի մօտիկը: Խիստ կարեւոր օրակարգ: 28 մարտ 1953ի պարահանդէսի կարգադրութիւնը: Կը խնդրուի ընկերուհիներէն ճշդապահ ըլլալ: Ներկաներու թիւը օրինական պիտի համարուի:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.— Այրի Տիկին Օ. Ֆէսճեան, Տէր եւ Տիկին Նշան Ֆէսճեան, Տէր եւ Տիկին Յակոբ Ֆէսճեան, Պ. Կարապետ եւ Գրիգոր Ֆէսճեան եւ պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք ցաւակցութիւն յայտնեցին անձամբ կամ գրաւոր, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր՝ Պ. ՕՆՆԻԿ ՖԷՍՃԵԱՆԻ մահուան առթիւ:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Սէն Շամոնի «Վարուժան» կոմիտէն կ'ողբայ ընկեր ՄԻՆԱՍ ԱԼԹՈՒՆԵԱՆԻ կորուստը եւ այս առթիւ իր ցաւակցութիւնները կը յայտնէ իր ընտանեկան պարագաներուն եւ «Արծիւ» ենթակոմիտէին:

× Իսի լէ Մուլինոյի Հ. Յ. Դ. Նոր Սերունդը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ իր երգչախումբին ղեկավար ընկ. Ս. Յովհաննէսեանի, ընկեր ՄԻՆԱՍ ԱԼԹՈՒՆԵԱՆԻ մահուան առթիւ:

×

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Ֆ. Հայ Կ. Խաչի Շաւիլի մասնաճիւղը ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Զարուհի Տողրամաճեանի եւ իր պարագաներուն, իրենց վաղամեռիկ զաւակին՝ ՄԻՀՐԱՆԻԿԻ կսկծալի մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի կը նուիրէ 1000 ֆր. Շաւիլի դպրոցին, 1000 ֆր. Նոր Սերունդին:

×

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Սէն - Ժերմի Հ. Յ. Դ. «Հայաստան» ենթակոմիտէն իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Ատանալեանի, իր մօր՝ ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԵՂԻՍԱԲԵԹԻ անակնկալ մահուան առթիւ, եւ փոխան ծաղկեպսակի 1000 ֆր. կը նուիրէ Կապոյտ Խաչի Սէն–Ժերմի մասնաճիւղին:

## ՀՐԱՊԱՐԱԿԱՅԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Մարսէյլ քաղաքի Ռոստոմ խումբին կողմէ, երկուշաբթի ժամը 21ին, Ահարոնեան ակումբին մէջ: 26 ռիւ տէ Քօնվալէսան:

Կը դասախօսէ ընկեր Տ. ԹԱԴՈՍԵԱՆ. դասախօսութենէն վերջ վիճաբանութիւն: Մուտքը ազատ է բոլորին համար:



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

«ՍԸ ՍՈՒԱՌ», Փարիզի համայնա֊վարներու իրիկուան օրաթերթը, պիտի դադրի Մարտ 1ին: Խմբագրութիւնը այս առթիւ յայտնապէս կը մեղադրէ Ամերի֊կացիները ըսելով թէ «1947էն եւ Մարշըլի ծրագրին հաստատումէն իվեր, անկա֊րելի եղաւ ազգ․անկախութեան կուսակից մամուլին հրատարակումը» եւ թէ ծա֊նուցում ալ չեն ստանար, իբրեւ հետե֊ւանք «Ամերիկացիներու ճնշումին»: «Սը Սուառ» հիմնուած էր 1936ին, սպառումը 602,000ի բարձրացաւ 1946ին, բայց 135 հազարի իջած էր 1951ի վերջը: Կեդր․ օր֊կանը, «Իւմանիթէ», իջած է օրական 174,800ի, մինչ 601,000 էր 1946ին․ «Լիպեռա֊սիոն»ը իջած է 115,000ի: «Սը Սուառ»ի փակումով Ֆրանսայի համայնավար օրա֊թերթերուն թիւը 30էն կ՚իջնէ 16ի:

ՎԵՑ ՀԱԶԱՐ կարմիրներ ցոյց մը կա֊տարեցին Միւնիխ իմէջ: Իրենց դէմ ելան 600 ոստիկաններ եւ բուռն ընդհարումներ տեղի ունեցան: Երկու ոստիկաններ սան֊դուղներէն վար նետուեցան, ուրիշներ ալ խոշտանգուեցան: Կռիւը տեւեց քանի մը ժամ:

ՄԱՐՍԷՅԼԻ մէջ 13 միլիոն Ֆրանք թռցուցած էր Փետր․ 7ին սեղանաւոր մը, Ճէյմս Նոթ: Մարդը ձերբակալուեցաւ Ցիւրիխի մէջ եւ ըսաւ թէ տասը միլիոնը նետած է շոգեկառքի ճամբուն վրայ: Պրպտումներ կատարուելով տասը միլիո֊նը գտան անտառի մը մէջ Մազարկի մօտ: Այս առթիւ թերթերը կը գրեն թէ Ցիւրիխի մէջ ձերբակալուած է գողին մէկ բարեկամը, Ալեքսանդր Մաւեան կամ Մառաւեան ?

ԹՐՈՒՄԸՆ իր յուշերը պիտի գրէ, փոխան 600,000 տոլարի զոր յանձն առած է վճարել «Լայֆ» շաբաթաթերթը:

ՀԻՒԼԷԱԿԱՆ փորձեր պիտի կատար֊ուին Նեւատայի մէջ (Մ․ Նահանգներ), մասնակցութեամբ 20,300 զինուորներու, որոնք պիտի սորվին ոչ միայն նոր զէնքե֊րու գործածութիւնը ,այլ եւ ինքնապաշտ֊պանութեան միջոցները:





## Հ. Յ. Դ. Թանգարան

Շնորհակալութեամբ ստացած ենք․—

Համազգայինի Կեդր․ Վարչութենէն (Պէյրութ) Նիկոլ Աղբալեանի ոսկեպատ ինքնահոս գրիչը (նուիրուած Հ .Յ. Դ. Աղեքսանդրիոյ Երիտ․ կողմէ 1928ին), ժամացոյցը ,ակնոցները, երկու ծխատու֊փերը, երկու ծխամորճերը, զմելին, դը֊րամապանակը եւ այլ մանր իրեր:

Տիկին Հ. Իփեկեանէ, Գասպար Ի֊փեկեանի ինքնահոս գրիչը, (նուիրուած Հ. Յ. Դ. Ամերիկայի Կ. Կ.ի կողմէ 1935ին), իր անձնական կնիքը, ծխամոր֊ճը եւ հրահանը:

Տիկին Ա. Ատոմեանէ, Արտօ Ատոմ֊եանի զինուորական փափախը, ժամա֊ցոյցը, ակնոցները եւ ողբացեալին երկու լուսանկարները:

Տիկին Հ. Շահինեանէ, Տրապիզոնի 95 թուականներու յայտնի դաշնակցական Կ. Շահինեանի արծաթեայ ծխատուփը, իր ձեռքով պատրաստուած եւ իր ծխա֊մորճը:

Տիկին Վ. Վարդանեանէ (Անիէր) Խը֊րիմեան Հայրիկի մեծադիր նկարը:

Սուրէն Շանթէ (Պէյրութ) իր հօրը՝ Լեւոն Շանթի ինքնահոս գրիչը, ժամա֊ցոյցը եւ ակնոցները:

Հ. Յ. Դ. Փարիզի Շրջ. Կ.էն Գաս֊պար Իփեկեանի մեծադիր նկարը:

Մկրտիչ Պարսամեանէ, 57 հատ լու֊սանկարներ, ազգային, հանրային, գրա֊կան, յեղափոխական եւ կուսակցական գործիչներու:

Յակոբ Պապիկեանէ (Մարսէյլ) Միք. Վարանդեանի յուղարկաւորութիւնը ներ֊կայացնող 5 լուսանկարներ, Ատանայէն Հաճընի ինքնապաշտպանութեան փութա֊ցող եւ ճամբան դաւադրաբար սպաննուած մարաշցի սպայ Միսաք Փիլաւճեանի թաղման լուսանկարը եւ Այնթապի ինք֊նապաշտպանութեան զին. կնիքներու լու֊սանկարը:

Պ .Մ. Կ.էն (Վիեննա–Աւստրիա) Հա֊յաստանի Հանրապետութեան (1918–1921) դիւանագիտական եւ զին. ներկայացու֊ցիչներու 15 կնիքները:

Հայրենակից Ք.էն, Անդրանիկի ան֊ցագիրը իր նկարով եւ իր ստորագրու֊թեամբ: Այս անցագրով Անդրանիկը այ֊ցելած է Իզմիր, Փարիզ եւ Լոնտոն: Թիֆ֊լիսի «Մշակ »թերթի խմբագիր Ա. Քա֊լանթարի մէկ նամակը ՝ուղղուած Է. Ակ֊նունիի 1900ին:

Պ. Գշիկեանէ՝ որ Սեբաստիա եւ Բրգնիք այցելած էր վերջերս, երկու տուփ հող՝ Դ. Վարուժանի եւ Մուրատի տուներու աւերակներէն: Վարչութիւն





## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի « Ահարոնեան » խումբի դասախօսութիւ֊նը այս Հինգշ. ժամը 21,30ին, Ազգ. Տան մէջ, 32 Ռիւ տը Թրէվիզ, Մէթրօ Քատէ: Կը խօսի ընկեր ՀԱՅԿԱԶՈՒՆԻ: Նիւթ՝ « Գերմանիոյ պարտութեան պատճառնե֊րը արեւելեան ճակատում»: Հայերէնի դասերը ժամը 20,15ին:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթա֊կան հաւաքոյթը այս Չորեքշաբթի երե֊կոյ, ժամը 9ին, Քատէ սրճարանին վեր֊նայարկը: Կը շարունակուի Պ. Գ. Ճիզ֊մէճեանի զեկուցումը եւ վիճաբանութիւն֊ները: Նիւթ «Քննական տեսութիւն հայ գաղթաշխարհին»: Մուտքը ազատ է:

ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ.— Սարսելէն Տէր եւ Տիկին Կ. Երանեան 1000 ֆրանք կը նուիրեն փոխան ծաղկեպսակի, իրենց քեռայրին՝ ՕՆՆԻԿ ՖԷՍՃԵԱՆԻ մահուան առթիւ Հ. Յ. Դ. Տան ֆոնտին, իսկ 1000 ֆր. նոյն նպատակին ողբ. ընկ. ՄԻՆԱՍ ԱԼԹՈՒՆԵԱՆԻ եւ Պ. Կ. ՄԱՅՏՈԶԼԵԱՆԻ մահուան առթիւ եւ 1000 ֆր. ալ «Յառա֊ջ»ի ֆոնտին: Ստանալ «Յառաջ»էն:

ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Մարսէյլէն Տէր եւ Տիկին Վ .Մուրատեան իրենց ցաւակ֊ցութիւնը կը յայտնեն Տէր եւ Տիկին Կա֊րապետ Տօնապետեանի, Տէր եւ Տիկին Խ. Տօնապետեանի (Հալէպ), Այրի Տիկին Մարիամ Ասատուրեանի (Կարտան), ի֊րենց սիրեցեալ մօր եւ հօրաքրոջ՝ ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ԹՈՒՐՎԱՆՏԱ ՏՕՆԱՊԵՏԵԱՆԻ մահ֊ուան առթիւ:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՓԱՐԻԶԻ Եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան Կրթ. Մարմինը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները․—

Պ. ԿՈՐԿԱՆԵԱՆ (Լըվալուա-Փէրէ) 20.000 ֆրանք:

Պ. ՀՐԱՆԴ ՊԱԼԵԱՆ (Վերսայլ) 2000 ֆ. Տիկին ՊԱՅՐԱՄԵԱՆԻ մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի: Պ. Ն. ԿԷՎՐԷԿ 5.000 ֆր. Պ. ՅԱ֊ԿՈԲԵԱՆ Արմէն ճարտարապետ ողբ. Ա. ԿԵՎՐԷԿԻ մահուան առթիւ փոխան ծաղ֊կեպսակի:





Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

# ՅԱՌԱՋ
ՕՐԱԹԵՐԹ

LE PREMIER QUOTIDIEN ARMENIEN EN EUROPE
HARATCH Fondé en 1925 R.C.S. 376-286
Directeur : SCH. MISSAKIAN
17, Rue Damesme — PARIS (13) Métro: TOLBIAC
Վեցամս. 1100 փր., Տար. 2200, Արտ. 3000 փր.
Tél. GOB. 15-70 Գին 10 փր. C.C.P. Paris 1678-63
Mercredi 25 Février Չորեքշաբթի 25 Փետր.

29րդ ՏԱՐԻ – 29e Année No. 7001 Նոր շրջան թիւ 2412 Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ


## ԵՒՐՈՊԱՅԻ ԲԱՆԱԿԻՆ ԹՆՃՈՒԿԸ

### ՀՌՈՄԻ ԺՈՂՈՎԸ ՊԻՏԻ ԿՐՆԱ՞Յ ԼՈՒԾԵԼ ՏԱԳՆԱՊԸ

*Երէկ, 24 Փետր., բացուեցաւ արեւմըտեան Եւրոպայի վեց զինակից պետութեանց արտաքին նախարարներու ժողովը, Հռոմի մէջ:*

*Ինչպէս գրած էինք երէկ, օրակարգի գլխաւոր խնդիրն է եւրոպական բանակի դաշնագիրը ,որու մասին տարբեր տեսակէտներ ունին անդամակիցները: Մասնաւորապէս Ֆրանսա շարք մը փոփոխութիւններ կը պահանջէ, դիւրացնելու համար դաշնագրին վաւերացումը: Կառավարութիւնը կոչ մը ուղղեց, վստահութիւն ներշնչելու համար Ֆրանսայի դիտաւորութեանց մասին: Ազգ. պաշտպանութեան նախարարութեան մէկ ներկայացուցիչը, Մանէ, առջի օր բացատրեց թէ կը չափազանցեն Ֆրանսայի առաջարկած փոփոխութեանց արժէքը: Եւ հաւաստեց թէ այդ յաւելուածները մեծ ազդեցութիւն մը պիտի չգործեն միացեալ բանակին վրայ եւ կրնային յետաձգուիլ, եթէ անհրաժեշտ չըլլար որոշ հաւաստիքներ տալ Ֆրանսայի հանրային կարծիքին, վաւերացումէն առաջ:*

*Կառավարութեան կոչը ուղղուած էր մասնաւորապէս Ֆրանսայի ժողովուրդին: Այս երկրորդ անգամն է որ Մայերի դահլիճը փորձ մը կը կատարէ, փարատելու համար զանազան թիւրիմացութիւններ: Առաջին փորձը տեղի ունեցաւ մէկ ամիս առաջ, երբ ընդդիմադիրները նոր զիջումներ կը պ ահանջէին զինակիցներէն:*

*Կոչը կը բացատրէ.—*

1. *Աւելի լաւ ծրագիր մը առաջարկուած չէ, եւրոպական բանակին տեղը բռնելու համար: Եթէ ազգ. բանակներու միութիւն մը կազմուի, վերակենդանացընելով գերման բանակը (Վերմախտ), այս վերջինը պիտի գերազանցէ Ֆրանսականը: Գերմանիոյ ռազմական հզօր ճարտարարուեստը եւ ուրիշ ազդակներ այնքան արտաքին օգնութիւն պիտի վայելեն որ նախատեսուած 12 գերման զօրաբաժինները պիտի բարձրանան 20ի ,յետոյ 30ի, մինչդեռ Ֆրանսա հազիւ 18 զօրաբաժին կրնայ հանել ամէնէն նպաստաւոր պարագաներուն մէջ:*

2. *Անհիմն է այն առարկութիւնը թէ եւրոպական բանակը պիտի խախտէ Ֆրանսայի գերիշխանութիւնը: Այդ գերիշխանութիւնը խախտած է արդէն, քանի որ Ֆրանսա չի կրնար առանձին պահպանել «արդիական պատերազմին ջիղը», հրանիւթին (էսանս) աղբիւրները եւ հայթայթումը եւ բաւականաչափ ածուխ չունի արհեստական հրանիւթ արտադրելու համար: Միւս կողմէ, Ֆրանսա գրեթէ ամբողջովին կախում ունի ուրիշ երկրի մը՝ Մ. Նահանգներու բարեացակամութենէն, զինամթերքի համար:*

3. *Պատերազմը այնքան բազմածախս է որ 150 միլիոնէն վար ազգ մը — Ֆրանսայի եռապատիկը — չի կրնար առանձին սպառազինուիլ: Նոյնիսկ Մեծն Բրիտանիան ծանր դժուարութեանց պիտի հանդիպի շատ չանցած: Անգլիա յաջողեցաւ մէկ հատ հիւլէական ռումբ արտադրել, բայց չի կրնար մեծ քանակութեամբ արտադրել, առանց գաղթապետութեանց աջակցութեան: Եւրոպեան բանակը իր զանգուածային արտադրութեամբ լաւագոյն միջոցն է կրճատելու արեւմտեան Եւրոպայի վերազինման ծախքերը:*

4. *Գերմանիոյ նախայարձակումէն վախնալով այդ երկիրը չէգոք պահել Արեւելքի եւ Արեւմուտքի միջեւ, պատճառ պիտի ըլլայ որ Գերմանիա կռուի ետ առնելու համար Ռուսիոյ գրաւած նահանգները: Հետեւանքը՝ երրորդ աշխարհամարտ. եւ կամ Գերմանիան նետել համայնավարութեան գիրկը, ճիշդ Չեխոսլովաքիոյ պէս: Այն ատեն ամբողջ Եւրոպան Ռուսերուն ձեռքը պիտի անցնի «իբրեւ հասուն պտուղ մը»:*

*✕ Վերջին լուրերը կը հաստատեն թէ Ֆրանսական ծրագրին գլխաւոր ընդդիմադիրը պիտի ըլլայ արեւմտեան Գերմանիոյ վարչապետը, Տոքթ. Ատենաուըր, որ Հռոմ հասաւ Պ.. Պինոյի հետ միաժամանակ: Գերմանիա կը վախնայ որ այդ յաւելուածներով աւելի մեծ դեր մը պիտի տրուի Ֆրանսայի: Իտալիոյ վարչապետը կը ջանայ հաշտարար դեր մը կատարել երկու պետութեանց միջեւ:*

*✕ Մ. Նահանգներու ծանօթ ծերակուտականը, Թէֆթ, որ գործօն դեր կը կատարէ այժմ, ճառ մը խօսելով ըսաւ Բշ. օր.— Գրեթէ անկարելի է շահիլ Քորէայի պատերազմը: Առայժմ պէտք է գոհանալ ամուր դիրք մը բռնելով,: — « Ես չեմ կարծեր թէ Ռուսերը նոր աշխարհամարտ մը պիտի սկսին: Անոնք այժմ այնպիսի դիրքի մը մէջ են որ կըրնան կարգ մը բաներ շահիլ առանց կռուելու: Եթէ երրորդ աշխարհամարտ մը փորձեն համայնավարութիւնը կրնայ կործանիլ»:*

---

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐՈՒՆ

Կամքէ անկախ պատճառներ կը ստիպեն մեզ այս խոշոր տառերով շարել տալ նիւթերը:

Նոր տառերը հասած ըլլալով, քանի մը օրէն թերթը ամբողջովին պիտի շարուի սովորական ձեւով եւ բոլոր բաժիններով:

Ուրիշ բարւոքումներ՝ յառաջիկային:

✕ Յատկապէս կը խնդրուի կարելի եղածին չափ ամփոփ գրել հանդէսի նկարագրութիւնները եւ զանազան ծանուցումներ, իսկ ցանկերը (նուէրներ եւն.) յետաձգել առայժմ:

---

*ԱԶԳԱԺՈՂՈՎԻ խորհրդային գլխաւոր պատուիրակը, Վիշինսկի, Նիւ Եորք հասաւ Բշ. օր, 13 հետեւորդներով: Քարափին վրայ դիրք բռնած էին հակաբոլշեւիկ Ռուսեր, Լեհեր եւն. որոնք թշնամական ցոյցեր կատարեցին: Իրենց դրօշներուն վրայ արձանագրուած էին հետեւեալ բառերը, — «Ոճրագործներ, մարդասպաններ»: Ուրիշ նշանատախտակի մը վրայ կ'երեւար Սթալինը, պարաններով կապուած զոր կը քաշէին բանուորներ: Գլխուն վրայ մուրճ մը բռնած էր ուրիշ բանուոր մը: Ամերիկեան ոստիկանութիւնը ամուր շղթայ մը կազմելով պաշտպանեց հիւրերը:*

---

## «ԲԱՑԷ՛Ք ՍԵՒ ԾՈՎԸ»

### Ի՞ՆՉ Կ'ԸՍԷ ԹՈՒՐՔ ԶՕՐԱՎԱՐ ՄԸ

*Թուրք զօր. Ալի Իհսան Ճէպէսոյ, որ 1914–18ի պատերազմին «հերոսներէն» կը համարուի եւ որուն յուշերէն կարգ մը հատուածներ հրատարակեցինք վերջերս, առջի օր ճառ մը խօսելով Ազգ. Ժողովին մէջ, ըսաւ թէ Մոնթրէօյի պայմանագիրը «քուրջի կտոր մըն է եւ պէտք է պատռուի այն ամերիկեան մարտանաւերուն կողմէ որոնք Տարտանէլի նեղուցէն պիտի գան, պաշտպանելու համար Սեւ Ծովու թրքական ափերը»:*

*Ինչպէս յայտնի է, Մոնթրէօյի պայմանագիրը, որ ստորագրուած է Խ. Միութեան եւ միւս մեծ պետութեանց կողմէ, թոյլ չի տար որ անոնց մարտանաւերը Սեւ Ծով մտնեն:*

*Զօրավարը բացատրեց թէ Սեւ Ծովու թրքական ափերը լայնօրէն բաց են հիւսիսէն ծրագրուած յարձակումներու առջեւ: «Կիպրոսի եւ Միջին Արեւելքի ուրիշ մասերուն մէջ տեղաւորուած դաշնակից օդանաւերը շատ հեռու են եւ չեն կրնար ժամանակին օգնութեան հասնիլ որեւէ յարձակման դէմ: Հետեւաբար, Մ. Նահանգներու նաւային ուժերը պէտք է խարխափ նետեն Սեւ Ծովու նաւահանգիստներուն մէջ: Միայն Խ. Միութիւնը եւ իր արբանեակները պիտի բողոքեն. բայց անոնք մեր բարեկամները չեն»:*

*Ուրիշ երեսփոխաններ ալ խօսք առնելով, դիտել տուին թէ Թուրքիա, հետեւաբար Ատլանտեանի ճակատին աջ թեւը բաց է անակնկալ յարձակման մը առջեւ: Քանի մը հոգի վախ յայտնեցին թէ խորհրդային օդանաւերը կրնան քարուքանդ ընել Թուրքիոյ մեծ քաղաքները եւ խնդրեցին որ կառավարութիւնը անհրաժեշտ միջոցները ձեռք առնէ:*

*Ազգ. պաշտպանութեան նախարարը խոստովանեցաւ թէ Ատլանտեան ճակատին աջ թեւը պէտք եղածին չափ պաշտպանուած չէ:*

### «ԱՐԹՈՒՆ ԿԱՑԷՔ»

*Խ .Միութեան սպայակոյտին նոր պետը, մառեշալ Սոքոլովսկի, կոչ մը ուղղեց բանակին ,որպէսզի արթուն կենան եւ պատրաստ ըլլան «Խ. Միութեան դէմ սարքուած նոր խաչակրութեան դէմ»: Նոյնիմաստ կոչեր ուղղեց ազգ. պաշտպանութեան նախարարը՝ մառեշալ Վասիլեւսկի: «Փրաւտա», «Կարմիր Տորմիղ» եւ «Կարմիր Բանակ» թերթերը այս կոչերը հրատարակեցին իրենց առաջին էջերուն վրայ:*

*Սոքոլովսկի կրկնելով հանդերձ Խ. Միութեան խաղաղասիրական քաղաքականութիւնը, կ'ըսէ թէ ամերիկեան աշխարհակալները «համաշխարհային տիրապետութեան մարմաջէն վարակուած ըլլալով, գրգռիչ պայքար մը կը կազմակերպեն Խ .Միութեան դէմ: Պէտք է արթուն կենալ խռովարար տարրերու դէմ եւ երեւան հանել զանոնք: Կարմիր բանակը ունի աշխարհի լաւագոյն զինուորները, ամէնէն կատարելագործուած սպառազինութիւնները եւ յաղթանակի ամէնէն յառաջդիմական, սթալինեան գիտութիւնը եւ պատրաստ է որեւէ ատեն ջախջախիչ հարուած մը տալու բոլոր նախայարձակներուն: Աշխարհակալ պետութիւնները նոր պատերազմ մը կը սարքեն գլխաւորութեամբ Մ. Նահանգներուն: Անհրաժեշտ է կրկնապատկել արթնութիւնը»: «Փրաւտա» իր խմբագրականին մէջ կ'ըսէ թէ կարմիր բանակը եւ կարմիր նաւատորմը միշտ կ'աշխատին կազմ եւ պատրաստ մնալ»:*

---

(Լուրերու շարունակութիւնը կարդալ Դ. էջ)

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄԻՋԻՆ ԱՐԵՒԵԼՔԻ կացութիւնը մեծ մտահոգութիւն կը պատճառէ Անգլիոյ: Չըրչիլ խնդրեց Աւստրալիոյ նոր կուսակալէն՝ մարեշալ Սլիմէ, որպէսզի յետաձգէ իր մեկնումը, խորհրդակցելու համար: Մարեշալը քաջածանօթ է Միջին Արեւելքի գործերուն: Հոն ծառայած է 1914–18ի պատերազմին եւ հրամանատար եղած է 1939–45ին:

ԵԳԻՊՏՈՍԻ վարչապետին աջ թեւը, գնդ. Նասըր, ձայնասփիւռ ճառ մը խօսելով, պահանջեց որ անգլ. զօրքը Սուէզէն հեռանայ անմիջապէս եւ առանց պայմանի: «Եգիպտոս սակարկութիւն պիտի չկատարէ իր նուիրական իրաւունքներուն համար: Այն ազգերը որ կը սակարկեն իրենց ազատութիւնը պիտի մնան գերութեան տակ»: — Համաձայնութիւն մը կնքուեցաւ Գահիրէի մէջ, ամերիկեան օգնութիւն ընծայելու համար Եգիպտոսի: Ամերիկացի մասնագէտներ կը քննեն երկրին պահանջները:

ԱԶԳ. ՉԻՆԱՍՏԱՆԻ դիկտատորը, զօր Չանկ–Քայ–Շէք Փետր. 23ին չեղեալ հռչակեց 1945ի ռուսեւչինական դաշնագիրը, որուն համաձայն երկու կողմերը յանձն կ'առնէին որեւէ զինակցութիւն չկնքել միւսին դէմ:

ԼՈՆՏՈՆԻ խորհրդային դեսպանը, Կրոմիքօ, 90,000 սթերլինի չէք մը յանձնեց Չըրչիլի, վերջին ողողումներուն զոհերուն համար:

ՊԵԼՃԻՔԱՅ Թագաւորը Պրիւսէլ վերադարձաւ հօրը եւ խորթ մօրը հետ: Կայարանը կը գտնուէին հարիւր հոգի: Այս առթիւ ըսաւ թէ մամուլի պայքարը կը վնասէ ազգ. համերաշխութեան:

ՆԱԽԿԻՆ ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐ Ժան Զէյի սպանութեան դատը տեղի ունեցաւ Լիոնի զին. ատեանին առջեւ: Գլխաւոր ամբաստանեալը, Շարլ Տըվէլ, նախկին սափրիչ, խոստովանեցաւ թէ հինգ անգամ գնդակ պարպեց եւ Նախարարին դիակը նետեց հովիտի մը մէջ: Ոճրագործներէն մէկը սպաննուած է, երկուքը փախած են: Վկաներուն մէջ կը գտնուէր Պ. Էռիօ: Վճիռը պիտի տրուէր երէկ:

«ԹԱՔՍԻ»ՆԵՐՈՒ տէրերը 20%էն աւելի օտար շարժավարներ պիտի չկրնան գործածել Սէնի նահանգին մէջ:

10,400 ԴԱՄԱԼԻՔՆԵՐ ընդհ. ներում պիտի ստանան Անգլիոյ մէջ, Էլիզապէթի Թագադրութեան առթիւ:

ՄԱՅՐ ՄԸ ԱՆՁՆԱՍՊԱՆ եղաւ երեք զաւակներու հետ (9 եւ 4 տարեկան եւ 9 ամսուան), կազին ծորակը բանալով: Մէկ սենեակ ունէին Փարիզի 20րդ թաղամասին մէջ, 4X4 քառ. մեթր տարածութեամբ: Բնակարանի տագնապին ամէնէն եղերական դէպքերէն մէկը...



## ՓԵՏՐՈՒԱՐ 18

### ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Զաւարեան» Կոմիտէի եւ մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Նոր Սերունդի եւ դպրոցի հոգաբարձութեան, այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30էն մինչեւ կէս գիշեր, Խըրիմեան դպրոցին մէջ: Կը նախագահէ ընկեր ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը խօսի ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Իսիի երգչախումբը ղեկավարութեամբ ընկեր Ս. Յովհաննէսեանի: Կ'արտասանեն ընկերներ Արիս Գարայեան եւ Եղիա Սերոբեան: Կ'երգեն Օրիորդներ Շաքէ Պէնկեան եւ Սրբուհի Շահինեան: Հանդէսէն վերջ խնջոյք: Ճոխ եւ մատչելի պիւֆէ: Մուտքը ազատ է:

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ, շաբաթ երեկոյեան ժամը 9ին, «Օհանջանեան» ակումբը: Կը խօսի ընկեր Մ. ՄԻՐՋԷ:

Գեղարուեստական ճոխ բաժին: Մուտքը ազատ է:

### ՏԵՍԻՆԻ ՄԷՋ

Տօնակատարութիւն խնջոյք նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէին, այս շաբաթ, ժամը 20,30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Այս առթիւ Փարիզէն հրաւիրուած են Ընկ. Բենօ (սրինգ) եւ երգեհոնահար Քեսելլին, որոնք պիտի նուագեն հայկական, կովկասեան պար եւ ռուսական եղանակներ: Պիտի ըլլան նաեւ նաեւ կովկասեան պարեր: Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները: Ճոխ պիւֆէ: Մուտքը ազատ է:



### ԱՐԵՒԱԳԱԼԻ ԵՐԳԵՑՈՂՈՒԹԻՒՆ ՊՕՄՈՆԻ ՄԷՋ

ՄԱՐՍԷՅԼ.— Պօմոնի Թաղ. Խորհուրդը կը փութայ ծանուցանել թէ՝ Արեւագալի հոգեզմայլ արարողութիւնները տեղի պիտի ունենան Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ ամէն հինգշաբթի առաւօտները ժամը 9էն սկսեալ, իսկ կիրակի օրեր՝ յետ պատարագի՝ ժամը 10,30ին: Կը մասնակցի Դպրաց Դասը:



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբի դասախօսութիւնը այս Հինգշ. ժամը 21,30ին, Ազգ. Տան մէջ, 32 Ռիւ տը Թրէվիզ, Մէթրօ Քատէ: Կը խօսի ընկեր ՀԱՅԿԱԶՈՒՆԻ: Նիւթ՝ «Գերմանիոյ պարտութեան պատճառները արեւելեան ճակատում»: Հայերէնի դասերը ժամը 20,15ին:

ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆԻՆ շաբաթական հաւաքոյթը այս Ջորեքշաբթի երեկոյ, ժամը 9ին, Քատէ սրճարանին վերնայարկը: Կը շարունակուին Պ. Գ. Ծիզմէճեանի զեկուցումը եւ վիճաբանութիւնները: Նիւթ «Քննական տեսութիւն հայ գաղթաշխարհին»: Մուտքը ազատ է:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հաճընի Հայր. Միութեան մեծ պարահանդէսը Մարտ 29ին, Սերքլը Միլիթերի սրահներուն մէջ:

ՄԱՐՍԷՅԼ.— Կամ. եւ Ռազմիկներու Միութեան հանդէսը ի պատիւ Պ. Շ. Տիրան Թէքէեանի Մարտ 8 ժամը 15–20, Սալ Քոլպէռ:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ

Ֆր. Կապոյտ Խաչի Փարիզի Մ. ճիւղին թէյասեղանը՝ ի պատիւ 11 Յունուարի պարահանդէսին մասնակցող օրիորդներուն եւ պարոններուն՝ այս Շբ օր ժամը 15,30ին Սալ Վոլթէրի մէջ, Փլաս տը լ'Օտէոն:

Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները:

### «ՎԱՐԴԱՆԱՆՑ»Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հայ Արենոյշներու եւ Արիներու միութեանց, այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մազընոյի մէջ:

Կը նախագահէ Պ. ՅՈՎՀ. ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ, կը բանախօսէ՝ Պ. Տ. ՓԻՐԱՆԵԱՆ: Բացում՝ Ն. Շնորհալիի »Նորահրաշ»ով: Խմբերգներ, արտասանութիւններ, շուետական մարզանքներ, բուրգեր: Պիտի նուագեն՝ Օր. Ա. Ակինեան, խմբապետուհիներ՝ Մ. Մարկոսեան եւ Էօժ. Թելեան, եւ խմբապետ՝ Հ. Պաբայեան: Պիտի ներկայացուի «Աւարայրի Արծիւ»էն տեսարան մը: Բարեկենդանի ուրախութիւն, տոհմիկ պարեր եւ անակընկալներ:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

ԱՆԳԼԻՈՅ զին. ելմտացոյցին քննութեան առթիւ, իրաւասու նախարարը ըսաւ թէ հետեւակազօրքը պիտի օժտուի շարք մը նոր զէնքերով: Ամէնէն նշանակելին ռումբ մըն է որ թէեւ հազիւ 600 կրամ կը կշռէ ,բայց կրնայ նոյնքան աւեր ցանել որքան հզօր հրասայլի մը ռումբը: Ուրիշ զէնքերու մասին ալ տեղեկութիւններ հաղորդեց:

ԻՐԱՆԻ վարչապետը պայմանաժամ խնդրեց, պատասխանելու համար անգլեւամերիկեան նոր առաջարկին՝ քարիւղի մասին: Կ՚ըսուի թէ նորէն պիտի մերժէ: Վարչապետը առաջարկեց Շահին պետութեան վերադարձնել 680 միլիոն րիալի կալուածներ (7,400,000 սթերլին), զոր ժառանգած է իր հօրմէն:

ԵԼՄՏԱԿԱՆ ՅԱՆՁՆԱԺՈՂՈՎԸ առաջարկեց Մարտ 15ին յետաձգել տուրքերու յայտարարութեան պայմանաժամը՝ անհատներու, իսկ Ապրիլ 15ին՝ առեւտրականներու համար: Նախարարը որեւէ խոստում չէ տուած, բայց կը կարծուի թէ հրջաբերականներ պիտի ղրկուին, որպէսզի քննիչները բարեացակամութեամբ վարուին հարկատուներուն հետ:

ԿՐԹԱԿԱՆ ՆԱԽԱՐԱՐ Ժան Զէյի սպանիչներէն Ժան Տըվէլ դատապարտուեցաւ ցկեանս թիապարտութեան, մէկը՝ տասը տարուան, իսկ երկու փախստականներ՝ մահուան:

ԹՈՒՐՔԻԱՅԷՆ Պուլկարիա վերադարձուած բոլոր գնչուները անմիջապէս գնդակահարուած են ,եթէ հաւատանք Թուրք թերթերու տեղեկութեանց:

---

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ. Տէր եւ Տիկին Զամաշուրճեան, Տէր եւ Տիկին Թրավէսեան եւ բոլոր պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ Փարիզի Հայոց եկեղեցին (15 ռիւ Ժան Կուժոն) ողբացեալ ՏԻԿԻՆ ՎԱՌՎԱՌ ԶԱՄԱՇՈՒՐՃԵԱՆԻ համար:

Կը խնդրուի յիշատակը յարգողներէն ներկայ ըլլալ:

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ. Այրի Տիկին Յովհաննէսեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի ,յետ պատարագի, Փարիզի Հայոց եկեղեցին, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր՝ ՍԱՐԳԻՍ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ: Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

---

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.– Ֆր. Կ. Խաչի Պոմոնի վարչութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր եւ Տիկին Գըլըճեանի՝ իրենց մօր՝ ՏԻԿ. ԽԱՍՎԱՐԴ ԳԸԼԸՃԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ, ինչպէս նաեւ բանաստեղծ Պ. Արսէն Երկաթի (Շամլեան) եւ իր հարազատներուն Տէր եւ Տիկին Պասմաճեանի, իրենց եղբօր եւ ազգականին մահուան առթիւ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ.– Ֆր. Կ. Խաչի Պոմոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Պօյաճեանէ 1000 ֆր. փոխան ծաղկեպսակի, Տիկին ԵՂՍԱ ԱՏԱՆԱԼԵԱՆԻ մահուան առթիւ:

---

## ԱՐԵՒԱԳԱԼԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

ԼԻՈՆ.– Արեւագալի արարողութիւնը պիտի կատարուի կիրակի առաւօտները, յետ պատարագի՝ ժամը 10,30ին: Կը հրաւիրուի Լիոնի եւ շրջանի հաւատացեալ ժողովուրդը, իսկ «Ենկեսցէ»ի արարողութիւնը պիտի կատարուի ամէն Դշ. եւ Ուրբաթ իրիկուն ժամը 5ին: Տեսին եւս «Ենկեսցէ»ի արարողութիւն պիտի կատարուի երկուշաբթի օրերը իրիկուան ժամը 7էն:

# ՓԵՏՐՈՒԱՐ 18

## ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Զաւարեան» Կոմիտէի եւ մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Նոր Սերունդի եւ դպրոցի հոգաբարձութեան ,այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30էն մինչեւ կէս գիշեր, Խըրիմեան դպրոցին մէջ: Կը նախագահէ ընկեր ԽԱԶԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը խօսի ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Իսիի երգչախումբը ղեկավարութեամբ ընկեր Ս .Յովհաննէսեանի: Կ՚արտասանեն ընկերներ Արիս Գարայեան եւ Եղիա Սերոբեան: Կ՚երգեն Օրիորդներ Շաքէ Պէնկեան եւ Սրբուհի Շահինեան: Հանդէսէն վերջ խնջոյք: Ճոխ եւ մատչելի պիւֆէ: Մուտքը ազատ է:

## ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ, շաբաթ երեկոյեան ժամը 9ին, «Օհանջանեան» ակումբը: Կը խօսի ընկեր Մ. ՄԻՐԶԷ:

Գեղարուեստական ճոխ բաժին: Մուտքը ազատ է:

## ՏԵՍԻՆԻ ՄԷՋ

Տօնակատարութիւն խնջոյք նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէին, այս շաբաթ ,ժամը 20,30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Այս առթիւ Փարիզէն հրաւիրուած են Ընկ. Բենօ (սրինգ) եւ երգեհոնահար Քեսելլին ,որոնք պիտի նուագեն հայկական, կովկասեան պար եւ ռուսական եղանակներ: Պիտի ըլլան նաեւ նաեւ կովկասեան պարեր: Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները: Ճոխ պիւֆէ: Մուտքը ազատ է: Եւրոպական պար:

---

ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

### ՀԱՅԿԱՆՈՒՇ ԹՈՐՈՍԵԱՆԻ

Salle Gaveau, 45 - 47 rue la Boëtie,

Կիրակի 1 Մարտ, ժամը 17ին

Գին՝ 100էն 600 ֆրանք:

---

## ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՊՈՄՈՆԻ Մ.ՃԻՒՂԻՆ ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Այս շաբաթ, ժամը 21ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ: Կը նախագահէ ընկերուհի ՏԻԿԻՆ ՔԻՊՐԻԹՃԵԱՆ:

Գեղարուեստական խնամուած բաժին: Պիտի նուագէ սիրուած ջութակահար Պ. Լ. ՂԵՒՈՆԴԵԱՆ, դաշնակով պիտի նուագէ ՕՐ. ՄԱՐԿՈՍԵԱՆ: Հայկ .եւ եւրոպական պարեր, ընտիր նուագախումբ ժամը 10էն մինչեւ լոյս:

---

## ԴԱՇՆԱԿԻ ԴԱՍ

Ծանօթ դաշնակահար հայ տիկին մը տրամադիր է դաշնակի մասնաւոր դասեր տալու փոքրերու եւ մեծերու, ամէնէն արդիական դրութեամբ:

Դիմել խմբագրութեան:

---



# ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի « Ահարոնեան » խումբի դասախօսութիւնը այս Հինգշ. ժամը 21,30ին, Ազգ. Տան մէջ, 32 Ռիւ տը Թրէվիզ, Մէթրօ Քատէ: Կը խօսի ընկեր ՀԱՅԿԱԶՈՒՆԻ: Նիւթ՝ « Գերմանիոյ պարտութեան պատճառները արեւելեան ճակատում»: Հայերէնի դասերը ժամը 20,15ին:

ՊԱՆԻԷՕ–ՔԱՇԱՆ. Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին, ֆրանս. դպրոցին սրահը:

Ֆր. ԿԱՊՈՅՏ ԽԱՉի Պանիէօ–Քաշանի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 3ին ընկերուհի Ս. Մալխասեանի տունը՝ 21 Սանթիէ տը լա Ռու, Պանիէօ:

ԱՆԻԷՌ–ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 9ին, Պուա Քոլոմպի կայարանին դիմացը:

ՄԱՐՍԷՅԼ.— Կամ. եւ Ռազմիկներու Միութեան հանդէսը ի պատիւ Պ. Շ. Տիրան Թէքէեանի Մարտ 8 ժամը 15–20, Սալ Քոլպէռ:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հաճընի Հայր. Միութեան մեծ պարահանդէսը Մարտ 29ին, Սերքըլ Միլիթերի սրահներուն մէջ:

---

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ

Ֆր. Կապոյտ Խաչի Փարիզի Մ.ճիւղին թէյասեղանը՝ ի պատիւ 11 Յունուարի պարահանդէսին մասնակցող օրիորդներուն եւ պարոններուն՝ այս Շբ օր ժամը 15,30ին Սալ Վոլթէռի մէջ, Փլաս տը լ՚Օտէոն:

Կը հրաւիրուին բոլոր ընկերուհիները:

---

## «ՎԱՐԴԱՆԱՆՑ»Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հայ Արենոյշներու եւ Արիներու միութեանց, այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մազընոյի մէջ:

Կը նախագահէ Պ. ՅՈՎՀ. ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ, կը բանախօսէ՝ Պ. Տ. ՓԻՐԱՆԵԱՆ: Բացում՝ Ն. Շնորհալիի »Նորա՛հրաշ»ով: Խմբերգներ, արտասանութիւններ, շուետական մարզանքներ, բուրգեր: Պիտի նուագեն՝ Օր. Ա. Ակինեան, խմբապետուհիներ՝ Մ. Մարկոսեան եւ Լօժ. Թելեան, եւ խմբապետ՝ Հ. Պարայեան: Պիտի ներկայացուի «Աւարայրի Արծիւ»էն տեսարան մը: Բարեկենդանի ուրախութիւն ,տոհմիկ պարեր եւ անակընկալներ:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է

---

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ.– Քէօսէեան Գալուստ, Իւնիայի Քէօքլիւք գիւղէն (Սամսոն), հօրը անունը Կարապետ, մօրը՝ Նազար, կը փնտռէ իր մօտաւոր թէ հեռաւոր ազգականները: Իմացնել 26 ռիւ Թրուայոն Սեվոր (Սէն է Ուազ):

ԾԱՆՐ ՈՂՈՂՈՒՄՆԵՐ պատահած են Իզմիրի, Անգարայի եւ ուրիշ վայրերու մէջ, քանդելով բազմաթիւ տուներ: Իզմիրի նշանաւոր «Քորտոն»ը ջուրերուն տակ մնացած էր անցեալ չաբթու:

ՀԱՄԱՑՆԱՎԱՐՆԵՐՈՒ Նիսի հաւաքատեղին քանդուեցաւ ուժգին պայթումի մը հետեւանքով: Թերթերը կը գրեն թէ միայն փլատակներ մնացած են: Մարդկային կորուստ չկայ:

ՍՈՒԷԶԻ ՄԱՍԻՆ բանակցութիւնները պիտի սկսին մօտերս: Լոնտոնի մէջ կը յուսան թէ կարելի պիտի ըլլայ համաձայնութեան մը յանգիլ, դիւրացնելով Միջին Արեւելքի ճակատին կազմութիւնը:

ՄԱՀՈՒԱՆ դատապարտուեցան երկու Յոյներ, իբրեւ լրտես (ի հաշիւ Պուլկարիոյ):

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ

Ֆր. Կապոյտ Խաչի Փարիզի Մ. ճիւղին թէյասեղանը՝ ի պատիւ 11 Յունուարի պարահանդէսին մասնակցող օրիորդներուն եւ պարոններուն՝ այս Շբ օր ժամը 15,30ին Սալ Վոլթէրի մէջ, Փլաս տը լ՛Օտէոն:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՍԷՆ ՇԱՄՈՆ. Տէր եւ Տիկին Զալիքեան, Տէր եւ Տիկին Յ. Աճէմեան (Լասիոթա), Տէր եւ Տիկին Ն. Բորթուգալեան (Լիոն), Տէր եւ Տիկին Բ. Կարապետեան (Լիոն), Պ. Պոտուքեան, Սարըկարապետեան, Տանձիկեան, Հաճի Գրիգորեան եւ Կարապետեան, ինչպէս նաեւ բոլոր պարագաները խորին շնորհակալութիւն կը յայտնեն Սէն Շամոնի երիտասարդութեան եւ բոլոր անոնց որոնք անձամբ կամ գրաւոր մասնակցեցան իրենց սուգին՝ ՅԱԿՈԲ ԶԱԼԻՔԵԱՆԻ մահուան առթիւ:

× Այս առթիւ Լասիոթայէն ընկ. Յ. Աճէմեան փոխան ծաղկեպսակի 1000 Ֆր. կը նուիրէ «Յառաջ»ի տարածման համար:

ՊՈՄՈՆ. Կ. Խաչի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Ա. Պասմաճեանէ 2000 Ֆր., իրենց մօրեղբօրորդւոյն՝ Պ. ԱՐՄԷՆ ՇԱՄԼԵԱՆԻ դառնաղէտ մահուան առթիւ:

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ. Այրի Տիկին Յովհաննէսեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի ,յետ պատարագի, Փարիզի Հայոց եկեղեցին, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր՝ ՍԱՐԳԻՍ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ: Կը հրաւիրուին յիշատակը յարգողները:

ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ.– Շաւիլէն՝ Քիւլչէեան, Փափազեան, Գալայճեան ընտանիքները կը ծանուցանեն թէ այս կիրակի հոգեհանգստեան պաշտօն կը կատարուի իրենց մօր եւ եղբօր՝ ԱՅՐԻ ՏԻԿ. ՔԻՒԼՋԷԵԱՆԻ եւ ՆԱԶԱՐ ՔԻՒԼՋԷԵԱՆԻ մահուան տարելիցին առթիւ: Կը խնդրուի իրենց յիշատակը յարգողներէն ներկայ գտնուիլ:

## ԵՐԳԱՀԱՆԴԷՍ

Ժողովրդական սիրուած երգչուհի

ԱՅՏԱ ԱԶՆԱՒՈՒՐԻ

Կիրակի 15 մարտ ժամը 17·30ին Սալ Կավօ, 45 Ռիւ լա Պօէսի:

Յայտագիրը նուիրուած է Հայաստանի ժողովրդական նոր երգերու (առաջին ունկնդրութիւն Փարիզի մէջ):

Դաշնակի ընկերակցութեամբ Օր. ԱՆԺԻԼ ՏԷՐ ՆԻԶԱՄԵԱՆԻ:

Տոմսերը 100էն 600 Ֆրանք:

Դիմել՝

Տիկին Ն. Պօյաճեանի, 83 Ռիւ տ՛Ապուքիր ՍԱՆդրալ 48—69

Հ. Բալըսեանի 43 Ռիւ Ռիշէ ՓՐՕ. 25—46

Ազնաւուրեանի 22 Ռիւ տը Նավարէն Փարի (9)

## ՓԵՏՐՈՒԱՐ 18

### ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Զաւարեան» Կոմիտէի եւ մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Նոր Սերունդի եւ դպրոցի հոգաբարձութեան ,այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30էն մինչեւ կէս գիշեր, Խըրիմեան դպրոցին մէջ: Կը նախագահէ ընկեր ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը խօսի ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

Գեղար. բաժնին կը մասնակցին Բենօ եւ Սէյրան, Իսիի երգչախումբը ղեկավարութեամբ ընկեր Ս .Յովհաննէսեանի: Կ՚արտասանեն ընկերներ Արիս Գարայեան եւ Եղիա Սերոբեան: Կ՚երգեն Օրիորդներ Շաքէ Պէնկեան եւ Սրբուհի Շահինեան: Հանդէսէն վերջ խնջոյք: Ճոխ եւ մատչելի պիւֆէ: Մուտքը ազատ է:

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ, չաբաթ երեկոյեան ժամը 9ին, «Օհանջանեան» ակումբը: Կը խօսի ընկեր Մ. ՄԻՐԶԷ:

Գեղարուեստական ճոխ բաժին: Մուտքը ազատ է:

### ՏԵՍԻՆԻ ՄԷՋ

Տօնակատարութիւն խնջոյք նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէին, այս չաբաթ ,ժամը 20,30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Այս առթիւ Փարիզէն հրաւիրուած են Ընկ. Բենօ (սրինգ) եւ երգեհոնահար Քեսելլին ,որոնք պիտի նուագեն հայկական, կովկասեան պար եւ ռուսական եղանակներ: Պիտի ըլլան նաեւ կովկասեան պարեր: Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները: Ճոխ պիւֆէ: Մուտքը ազատ է: Եւրոպական պար:

## ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՊՈՄՈՆԻ Մ. ՃԻՒՂԻՆ ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Այս չաբաթ, ժամը 21ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ: Կը նախագահէ ընկերուհի ՏԻԿԻՆ ՔԻՊՐԻԹՃԵԱՆ:

Գեղարուեստական խնամուած բաժին: Պիտի նուագէ սիրուած ջութակահար Պ. Լ. ՂԵՒՈՆԴԵԱՆ, դաշնակով պիտի նուագէ ՕՐ. ՄԱՐԿՈՍԵԱՆ: Հայկ .եւ եւրոպական պարեր, ընտիր նուագախումբ ժամը 10էն մինչեւ լոյս:





## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՊԱՆԻԷՕ-ՔԱՇԱՆ. Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին, ֆրանս. դպրոցին սրահը:

Ֆր. ԿԱՊՈՅՏ ԽԱՉի Պանիէօ-Քաշանի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս չաբաթ ժամը 3ին ընկերուհի Ս. Մալխասեանի տունը՝ 21 Սանթիէ տը լա Ռու, Պանիէօ:

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՄՊԻ Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս ուրբաթ ժամը 9ին, Պուա Քոլոմպի կայարանին դիմացը:

ՄԱՐՍԷՅԼ. Համախարբերդցիական Միութեան մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի առտու ժամը 9ին, Պառ տիւ Կլօպի մէջ, 7 Պուլվառ տ՚Աթէն: Խիստ կարեւոր օրակարգ: Կը հրաւիրուին նաեւ օժանդակ անդամները:

## ՀԱՄԱԶԳ. ՍԳԱՏՕՆԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

ՄԱՐՍԷՅԼ, 24 Փետր.– Այս տարի Ապրիլեան Համազգ. Սգատօնը կը կատարուի նախաձեռնութեամբ երեք յարանուանութեանց պետերուն:

Արդէն իսկ՝ այս ձեռնարկի մասին ժողով գումարուած է Փետր. 7ին, չաբաթ երեկոյեան, կարգ մը հանրանուէր միութեանց ներկայացուցիչներու մասնակցութեամբ:

Մանրամասնութիւնները (օր եւ վայր) յառաջիկային, մամուլի միջոցաւ:

Դիւան Ազգ. Կեդր. Վարչութեան

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

Սալ Ժան Ժոռէս Վոտէյի մէջ

Պանիէօի մէջ, Նոր Սերունդը կազմակերպած է դասախօսութիւն մը, այս երկուշաբթի ժամը 20,30ին: Պիտի դասախօսէ Պ. ԹՈՐՈՍԵԱՆ: Նիւթը՝ «Առաջին Համաշխարհային պատերազմը եւ հայկական հարցը»: Կը հրաւիրուին բարեկամները, համակիրները եւ երիտասարդները:

## «ՎԱՐԴԱՆԱՆՑ»ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հայ Արենոյշներու եւ Արիներու միութեանց, այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մազընոյի մէջ:

Կը նախագահէ Պ. ՅՈՎՀ. ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ, կը բանախօսէ՝ Պ. Տ. ՓԻՐԱՆԵԱՆ: Բացում՝ Ն. Շնորհալիի »Նորահրաշ»ով: Խմբերգներ, արտասանութիւններ, շուետական մարզանքներ, բուրգեր: Պիտի նուագեն՝ Օր. Ա. Ակինեան, խմբապետուհիներ՝ Մ. Մարկոսեան եւ էօժ. Թելեան, եւ խմբապետ՝ Հ. Պաքայեան: Պիտի ներկայացուի «Աւարայրի Արծիւ»էն տեսարան մը: Բարեկենդանի ուրախութիւն ,տոհմիկ պարեր եւ անակընկալներ:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է



Le Gérant : A. NERCESSIAN

Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)

### ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՄԱՐՈՔԻ Անկախութիւն (Իսթիքլալ) կուսակցութեան ընդհ. քարտուղարը բաց նամակ մը ուղղելով Այզընհաուըրի, կը խնդրէ «բազմաչարչար Մարոքը փրկել Ֆրանսական բռնատիրութենէն»: Այս առթիւ ծանր մեղադրանքներ կ'ուղղէ Ֆրանսական իշխանութեանց դէմ, ինչպէս կը գրէ «Լը Մոնտ»: — Վարչապետը Ալժերիա պիտի երթայ այս շաբթու եւ կարեւոր ճառ մը պիտի խօսի:

ՍՊԱՆԻԱՅ արտաքին նախարարը ըսաւ թէ յաջող կ'ընթանան Մ. Նահանգներուն հետ կատարուած բանակցութիւնները, որոնք կը շարունակուին երկու տարիէ ի վեր: Այս առթիւ բացատրեց թէ զին. խարիսխներ «ծախելու խնդիր չկայ, ոչ ալ վարձու տալու. այլ պարզապէս պիտի արտօնեն որ Ամերիկացիները օգտագործեն զանոնք, Սպանիացիներու հետ»:

ՄԱՀՈՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՆ երկու Ալպանացիներ, իբրեւ լրտես, ուրիշ վեց ամբաստանեալներ ալ՝ 2–25 տարի բանտարկութեան:

ԱՆԳԼԻՈՅ արտաքին եւ ելմտական նախարարները Ուաշինկթըն մեկնեցան, խորհրդակցելու համար դրամական խընդիրներու մասին:

ԱՐԵՒԵԼԵԱՆ ԳԵՐՄԱՆԻՈՅ խորհրդային զինուորները պիտի քաշուին Յունիս 1ին, համաձայն Պերլինի մէջ շրջած զրոյցներու: Այս առթիւ Խ. Միութիւնը պիտի պահանջէ որ վերահաստատուի Գերմանիոյ միութիւնը, Հոենոսէն Օտէր-Նայսէ գիծը: Նոյն աղբիւրին համաձայն, հրահանգուած է զօր. Շտեմենկոյի կազմակերպել կարմիր բանակի 300,000 զինուորներու նպարպումը:

16ԷՆ ՎԱՐ ՏՂՈՑ արգիլուած է սըրճարան եւ զինետուն մտնել, առանց իրենց հօրը, մօրը կամ ուրիշ չափահաս ազգականի մը ընկերակցութեան:

ՊԵՐԼԻՆԻ արեւմտեան շրջանին մէջ երեւան հանուեցաւ լրտեսական ցանց մը որ կը գործէր ի հաշիւ Խ. Միութեան:

ՊԵԼԺԻՈՅ դահլիճը վստահութեան քուէ ստացաւ Երեսփ. Ժողովէն, բուռն ժխորէ մը վերջ: Վարչապետը խոստովանեցաւ թէ Թագաւորը տեսակցութիւն մը շնորհած է «Ֆրանս Սուար»ի թղթակցին:

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ մամուլը (կարմիր) «Ժողովուրդի Թշնամի» կ'անուանէ հանգուցեալ Նախագահը, Պէնէշ, եւ «բուն ներշնչողը յետադիմական դաւին, որուն ծրագիրները ի դերեւ հանուեցան 1948 Մարտ 25ին» (բոլշեւիկեան դաւ): Կ'ըսուի թէ ձերբակալուած է Պենէշի այրին:

### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ

Ֆր. Կապոյտ Խաչի Փարիզի Մ. ճիւղին թէյասեղանը՝ ի պատիւ 11 Յունուարի պարահանդէսին մասնակցող օրիորդներուն եւ պարոններուն՝ այս Շբ օր. ժամը 15,30ին Սալ Վոլթէրի մէջ, Փլաս տը լ'Օտէոն:



## ՓԵՏՐՈՒԱՐ 18

### ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Զաւարեան» Կոմիտէի եւ մասնակցութեամբ Ֆ. Կ. Խաչի, Նոր Սերունդի եւ դպրոցի հոգաբարձութեան, այս կիրակի կէսօրէ ետք ժամը 3,30էն մինչեւ կէս գիշեր, Խըրիմեան դպրոցին մէջ: Կը նախագահէ ընկեր ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ, կը խօսի ընկեր ԱՇՈՏ ԻՍԱՀԱԿԵԱՆ:

Գեղար. բաժնին կը մասնակցին Բենօ եւ Սէյրան, Իսիի երգչախումբը ղեկավարութեամբ ընկեր Ս. Յովհաննէսեանի: Կ'արտասանեն ընկերներ Արիս Գարայեան եւ Եղիա Սերոբեան: Կ'երգեն Օրիորդներ Շաքէ Պէնկեան եւ Սրբուհի Շահինեան: Հանդէսէն վերջ խնջոյք: Ճոխ եւ մատչելի պիւֆէ: Մուտքը ազատ է:

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Կոմիտէի կողմէ, շաբաթ երեկոյեան ժամը 9ին, «Օհանջանեան» ակումբը: Կը խօսի ընկեր Մ. ՄԻՐՋԷ:

Գեղարուեստական ճոխ բաժին: Մուտքը ազատ է:

### ՏԵՍԻՆԻ ՄԷՋ

Տօնակատարութիւն խնջոյք նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Կոմիտէին, այս շաբաթ, ժամը 20,30ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Այս առթիւ Փարիզէն հրաւիրուած են Ընկ. Բենօ (սրինգ) եւ երգեհոնահար Քեսեճեան, որոնք պիտի նուագեն հայկական, կովկասեան պար եւ ռուսական եղանակներ: Պիտի ըլլան նաեւ կովկասեան պարեր: Կը հրաւիրուին շրջանի բոլոր ընկերները: Ճոխ պիւֆէ: Մուտքը ազատ է: Եւրոպական պար:

### ՖՐ. Կ. ԽԱՉԻ ՊՈՄՈՆԻ Մ. ՃԻՒՂԻՆ ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Այս շաբաթ, ժամը 21ին, Ս. Սահակ Մեսրոպ սրահին մէջ: Կը նախագահէ ընկերուհի ՏԻԿԻՆ ՔԻՊՐԻԹՃԵԱՆ:

Գեղարուեստական խնամուած բաժին: Պիտի նուագէ սիրուած ջութակահար Պ. Լ. ՂԵՒՈՆԴԵԱՆ, դաշնակով պիտի նուագէ ՕՐ. ՄԱՐԿՈՍԵԱՆ: Հայկ. եւ եւրոպական պարեր, ընտիր նուագախումբ ժամը 10էն մինչեւ լոյս:

### «ՅԱՌԱՋ»Ի ՏԱՐԱԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Քլեռմոն-Ֆեռանէն Պ. Գաբրիէլ Փափազեան 800 Ֆր. կը նուիրէ «Յառաջ»ի տարածման ֆոնտին:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Ֆր. ԿԱՊՈՅՏ ԽԱՉի Պանիէօ-Քաշանի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս շաբաթ ժամը 3ին ընկերուհի Ս. Մալխասեանի տունը՝ 21 Սանթիէ տը լա Ռու, Պանիէօ:

ՄԱՐՍԷՅԼ. Համախարբերդցիական Միութեան մասնաճիւղի ընդհ. ժողովը այս կիրակի առտու ժամը 9ին, Պառ տիւ Կլօպի մէջ, 7 Պուլվառ տ'Աթէն: Խիստ կարեւոր օրակարգ: Կը հրաւիրուին նաեւ օժանդակ անդամները:



### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՁԵՌՆԱՐԿՆԵՐԸ

Սալ ժան ժոռէս վոտէյի մէջ

Պանիէօի մէջ, Նոր Սերունդը կազմակերպած է դասախօսութիւն մը, այս երկուշաբթի ժամը 20,30ին: Պիտի դասախօսէ Պ. ԹՈՐՈՍԵԱՆ: Նիւթը՝ «Առաջին Համաշխարհային պատերազմը եւ հայկական հարցը»: Կը հրաւիրուին բարեկամները, համակիրները եւ երիտասարդները:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ.— Հ. Յ. Դ. Լիոնի «Վարանդեան» կոմիտէն ցաւակցութիւն կը յայտնէ Տէր եւ Տիկին Գրիգոր Աճէմեանի, ընկեր ՀՐԱՆԴ ՔԷՕՍԷԵԱՆԻ մահուան առթիւ (Փարիզ) եւ փոխան ծաղկեպսակի Հ. Յ. Դ. հիմնադրամին կը նուիրէ հազար Ֆր.: Նոյն առթիւ ցաւակցութիւն կը յայտնէ նաեւ Կ. Խաչի մ. ճիւղը:

### «ՎԱՐԴԱՆԱՆՑ»Ը ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հայ Արենոյշներու եւ Արիներու միութեանց, այս կիրակի կէս օրէ վերջ, ժամը 3էն մինչեւ կէս գիշեր, Սալ Մազընոյի մէջ:

Կը նախագահէ Պ. ՅՈՎՀ. ՀԱՅԱԳՈՐԾԵԱՆ, կը բանախօսէ՝ Պ. Տ. ՓԻՐԱՆԵԱՆ: Բացում՝ Ն. Շնորհալիի »Նոբահրաշ»ով: Խմբերգներ, արտասանութիւններ, շուետական մարզանքներ, բուրգեր: Պիտի նուագեն՝ Օր. Ա. Ակինեան, խմբապետուհիներ՝ Մ. Մարկոսեան եւ Ժօժ. Թելեան, եւ խմբապետ՝ Հ. Պաքայեան: Պիտի ներկայացուի «Աւարայրի Արծիւ»էն տեսարան մը: Բարեկենդանի ուրախութիւն, տոհմիկ պարեր եւ անակընկալներ:

ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է



Le Gérant : A. NERCESSIAN
Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme, Paris (13)